# ԴԵՊՈՒՏԱՏԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Մեր Կարենի հայրիկին
Գյուղում կոչում են փարոս.
Թերթերում էլ գրեցին,
Որ նա հովիվ է հերոս։

Դեպուտատ է ընտրվում
Նա Գերագույն սովետի.
Ա՛յ, թե ինչքան են հարգում
Մարդիկ քեռի Ավետին։

Ամառ լինի, թե ձմեռ,
Նեղ, քարքարոտ ճամփեքով
Նա ոչխարի հոտը մեր
Տուն է բերում ապահով։

Նույնիսկ Մոսկվա է հասել
Նրա պահած ոչխարը.
Նրա մասին, ի՞նչ ասեմ,
Գիտի ամբողջ աշխարհը։

Տուն է գալիս նա հոգնած,
Մեզ իր շուրջը հավաքում,
Հեքիաթ ասում սրտաբաց
Ու սրինգ է նվագում։

Սիրում եմ ես կարկաչուն
Ձայնը նրա սրնգի.
Գյուղում փարոս են կոչում
Մեր Կարենի հայրիկին։



# ԻՆՉ Է ՆՇԱՆԱԿՈՒՄ ՍՊԱՆԵԼ ԺԱՄԱՆԱԿԸ

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ես այնքան շատ եմ տուժել մինչև որ հասկացել եմ, թե ինչ է նշանակում «սպանել ժամանակը»։ Իսկ երբ հասկացա, անմիջապես պատմեցի ընկերներիս, հետո գրեցի մեր դպրոցական պատի թերթին, որպեսզի ուրիշներն էլ ինձ պես չտուժեն։ Հիմա էլ մտածում եմ՝ ավելի լավ չի՞ լինի գրեմ «Պիոներ» ամսագրին, որ բոլոր երեխաներն իմանան։ Թե չէ մի տեսակ վատ եմ զգում, ինձ թվում է, որ ես վատ ընկեր ու վատ պիոներ կլինեմ, եթե այդ գաղտնիքը չպատմեմ բոլորին։ Ես կպատմեմ, ով խելոք է՝ կհասկանա ու կշահի, ով խելք չունի, չի հասկանա, մինչև ինքն էլ մի լավ չտուժի։ Հիմա լսեցեք, ուրեմն ի՞նչ է նշանակում «սպանել ժամանակը»։

Դա նշանակում է՝ չխաղալ, վատ պատրաստել դասերը, հեռուստացույց չնայել (մի բան, որ շատ եմ սիրում ես և որից շատ էլ զրկվել եմ), բայց այս մասին հետո, բարկացնել մայրիկին (իսկ սրա հետևանքները բազմաթիվ ու բազմազան են), դառնալ երկրորդ դասարանցի քույրիկիս ծաղրի առարկան (այս մեկին արդեն դիմանալ չի լինում): Ու էլի շատ ու շատ բաներ, բայց ավելի լավ կլինի, այդ բոլորը թվարկելու փոխարեն պատմեմ, թե դա ինչպես է լինում։

Դասերից հետո գալիս եմ տուն։ Բակում տղաները ֆուտբոլ են խաղում։ Կանգնում-նայում եմ նրանց խաղին, երբեմն ինձ էլ է հաջողվում մի երկու անգամ խփել գնդակին, բայց հանկարծ մեր պատշգամբում հայտնվում է մայրս.

— Արմե՛ն, տո՛ւն արի, մի ժամ է դասերդ վերջացել են, որտե՞ղ ես թափառում։

Ի՞նչ կարող ես անել, բարձրանում եմ վերև, բայց ուշքս բակում է։ Նախաճաշում եմ և ձևի համար դասագիրքս վերցնում ու նստում գրասեղանի մոտ: Մայրս զբաղված է խոհանոցում, բայց երբեմն-երբեմն սենյակ է մտնում ու աչքի տակով նայում ինձ։ Հենց որ նա ներս է մտնում, ես անմիջապես սկսում եմ կարդալ, բայց երբ դուրս է գալիս, թողնում եմ կարդալը և, ականջս դրսի ձայներին, մտածում, որ եթե մեծանամ, ֆուտբոլիստ կդառնամ, կխաղամ իսկական ստադիոնում։ Մայրս նորից է

ՄԱՐՏ
№ 3 1963 Թ.

# ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ներս մտնում, ես էլի անմիջապե՛ս սկսում եմ կարդալ մի պատահական տեղից։ Մայրս նայում է, գլուխն օրորում և դուրս գալիս։ Հիմա էլ հիշում եմ, թե այսօր Սարիկը հայոց լեզվի դասին ինչպես էր հացի գնդիկներով խփում իր առջևը նստած Լուսիկի գլխին։ Լուսիկի մազերը գանգուր են, հացի գնդիկները ընկնում էին նրա խոպոպների մեջ ու մնում, իսկ մենք ծիծաղում էինք։ Փորձում եմ ես էլ նույն ձևով խփել քույրիկիս, որը նույնպես նստած դաս է պատրաստում։ Քույրիկս անմիջապես բողոքում է։ Մայրս ներս է մտնում։ Ես նորից ըսկըսում եմ կարդալ։ Իսկ ժամանակը թռչում է։ Քույրս վերջացնում է դասերը, գնում խաղալու, իսկ ես դեռ աշխարհագրության գիրքն եմ թերթում ու նոր եմ միայն նկատում, որ այսքան ժամանակ հին դասն եմ կարդացել։ Բացում եմ նոր դասն ու սկսում արագ-արագ կարդալ, Մեկ էլ լըսում եմ քրոջս ձայնը.



Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

— Մայրի՛կ, Արմենը ծույլ է, չէ՞, դեռ դասերը չի սովորել, իսկ ես շուտ-շուտ վերջացրի, հիմա էլ գնում եմ հեծանիվով զբոսնելու։— Մոտենալով դըռանը, նա կանչում է.— Ծույլի՛կ, ծույլի՛կ,— ապա ծիծաղում է ու փախչում։

Ես կատաղած դուրս եմ թռչում, որ մի լավ ծեծեմ քրոջս, բայց մայրս կտրում է ճանապարհս.

— Նո՛ւտ, անցրո՛ւ տե՛ղդ, դու միայն ժամանակ ես սպանում, փոխանակ դասդ պատրաստելու։

Քիչ հետո աշխատանքից վերադառնում է հայրս։ Բոլորս նստում ենք ճաշելու, իսկ ճաշից հետո հեռուստացույցի ժամն է, սկսվում է մանկական հաղորդումը։ Ես շատ եմ ուզում նայել, բայց ինձ արգելում են.

— Մանկական հաղորդումները այն երեխաների համար են, որոնք պատրաստել են դասերը։ Անցի՛ր մյուս սենյակը և նախ դասերդ պատրաստիր։

Այստեղ քույրս նորից հրճվում է։

Տխուր-տրտում գնում եմ մյուս սենյակը, դուռը կիսաբաց թողնում և դասագիրքը վերցնում ձեռքս։ Մեկ գրքին եմ նայում, մեկ դռան արանքից՝ հեռուստացույցին։ Ինձ թույլ չեն տալիս նայել նաև վերջում ցուցադրվող կինոնկարը, որը կռվի մասին է։ Իսկ աշխարհում ամենից շատ ես «կռիվ-կինոները» եմ սիրում։

Մայրս թեև պատժել է ինձ, բայց անհանգիստ է, անընդհատ գալիս է ինձ մոտ, ուզում է օգնել։

— Ի՞նչ է, չե՞ս հասկանում կարդացածդ, հապա ցույց տուր անհասկանալի տեղը, բեր բացատրեմ։ Նախ թվաբանության խնդիրը վճռիր, հետո մյուս դասերդ պատրաստիր։

Ու նա մեկ խորհուրդ է տալիս, մեկ բացատրում, մեկ վրդովվում իմ անուշադրության համար, մեկ սպառնում, թե ինձ էլ ինչ-ինչ բաներից է զրկելու։

Մորս օգնությամբ մի կերպ պատրաստում եմ դասերս, բայց արդեն աչքերս փակվում են, ու ես քնում եմ։

Ու այսպես ամբողջ օրն անցնում է. ես ո՛չ խաղում եմ, ո՛չ հեռուստացույց նայում, ո՛չ հանգստանում, ո՛չ էլ դասերս մի կարգին պատրաստում.

Պետք է սիրել այն գործը, որ անում ես, և այդ ժամանակ աշխատանքը, նույնիսկ ամենակոպիտը, կվերածվի ստեղծագործության։

Մ. ԳՈՐԿԻ

Տաղանդավոր ու աշխատասեր մարդու համար գոյություն չունի ոչ մի խոչընդոտ։

Լ. ԲԵԹՀՈՎԵՆ

Հավատացե՜ք ինձ, որ եթե իմ հետազոտությունները տվել են մի քանի օգտակար արդյունքներ, ապա դրանք պարտական են աշխատանքին ու համբերությանը։

Ի. ՆՅՈՒՏՈՆ

Այն մարդը, որն ամեն քայլափոխին աշխատում է խույս տալ գործից, որը հանգիստ նայում է, թե ինչպես են աշխատում ուրիշները, օգտվում է նրանց աշխատանքի պտուղներից, այդպիսի մարդը ամենավատ բարքերի տերն է։

Ա. ՄԱԿԱՐԵՆԿՈ

Աշխատասեր մարդու մատները բարիքներով լի մառանի բանալիներ են։

ՀՆԴԿԱԿԱՆ ԱՍԱՑՎԱԾՔ

մինչդեռ ամբողջ օրը դասագիրքը ձեռքիցս ցած չեմ դնում։ Փոխարենը բարկացնում եմ մայրիկիս, հաջորդ օրը ցածր գնահատական ստանում, որի պատճառով հայրս ինձ զրկում է կիրակնօրյա զբոսանքից։ Նա միայն տանում է քրոջս, որը մի հաղթական հայացք գցելով ինձ վրա՝ ուրախ հետևում է հորս։ Ահա թե ինչ է նշանակում «ժամանակ սպանել»։

Այսպես, անկախ իմ կամքից «ժամանակ էի սպանում» ամեն օր, մինչև որ խելքի եկա, իսկ դա պատահեց այսպես...

Ասենք, դա կարևոր չէ, թե ինչպես պատահեց, ես դա էլ կպատմեի, բայց ի՞նչ կարիք կա, որ բոլորդ էլ իմանաք, թե ինչ խայտառակ բան պատահեց։ Կարևորն այն է, որ հիմա ես այլևս ժամանակ չեմ սպանում, երկու ժամը լիովին ինձ բավականացնում է դասերս պատրաստելու համար, իսկ մնացած ժամանակը և՛ խաղում եմ, և՛ զբոսնում, և՛ հեռուստացույց նայում, և՛ գեղարվեստական գրքեր կարդում։ Ու հիմա ինքս էլ գոհ եմ ինձնից, մայրիկս էլ, ուսուցիչներս էլ։

Իսկ գաղտնիքն այն է, որ երբ մի գործով զբաղվում ես, պետք է ամբողջ ուշադրությունդ կենտրոնացնես այդ գործին, ուրիշ ոչ մի բանի մասին չմտածես։ Այդպես և՛ շուտ կավարտես գործդ, և՛ լավ արդյունքի կհասնես, և... ժամանակ չես սպանի։

# ՄՈՒԿՈՒՉԻ ԳՐՊԱՆԸ

Հ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Տարեվերջին, երբ Ֆիզիկայի դասատուն գործող մոդելներ պատրաստելու առաջադրանքներ տվեց, մեկը նավ ընտրեց, մի ուրիշը՝ Մաքսվելի ճոճանակ, մեկը՝ ինքնաթիռ, մյուսը՝ Սեգներյան անիվ և կամ Մորզեի ապարատ, մեր Մուկուչն էլ, թե՝ գրպանի ընդունիչ կպատրաստեմ։

Այստեղ են ասել՝ հը՜մ։

Բայց երբ Մուկուչի նման մեկը վերջապես ուզում է ինչ-որ բանի կպչել, հո չե՞ս կարող «հը՜մ» ասել։

— Էնպես պատրաստե՜մ,— պարծեցավ Մուկուչը։

2

Պատմվածքը պատմվածք, բայց չասեք, թե հորինում եմ։ Բոլորդ էլ գիտեք, որ այս տարի, երբ սկսվեց գարնանային արձակուրդը, արևն ասես սանատորիայից վերադարձավ և այնպես էր ուժեղացել, որ թութը մի քանի օրից հասցրեց։

Եթե դուք հաջող եք ընտրում աշխատանքը և այնտեղ ներդնում եք ձեր ամբողջ հոգին, ապա երջանկությունն ինքը կգտնի ձեզ։

Կ. ՈՒՇԻՆՍԿԻ



Առանց ակնհայտ համառ աշխատասիրության, չկան ո՛չ տաղանդներ, ո՛չ հանճարներ։

Դ. ՄԵՆԴԵԼԵԵՎ

Պարապությունը մեն տեսակ չարիքի արմատն է...

Ա. ՍՈՒՎՈՐՈՎ

Բոլոր պտուղներից ամենաքաղցրը աշխատանքի պտուղն է։

ՀԱՅԿԱԿԱՆ ԱՍԱՑՎԱԾՔ



Նա, ով մանկությունից գիտե, որ աշխատանքը կյանքի օրենքն է, ով փոքրուց հասկացել է, որ հացը ձեռք է բերվում միայն ճակատի քրտինքով, նա ընդունակ է սխրագործության...

ԺՅՈՒԼ ՎԵՌՆ

Մարդու հայելին՝ նրա աշխատանքն է։

ԱՆԳԼԻԱԿԱՆ ԱՍԱՑՎԱԾՔ

# ԸՆԴՈՒՆԻՉԸ



Նկ. Գ. Ր. ԽԱՆՋՅԱՆԻ

Ահա, հենց այդ օրերին էր, որ Մուկուչի հորաքույրը լուր ուղարկեց, թե՝ եկեք թութ ուտելու։

— Բալիկ ջան, — ասաց մայրը, — լավ եղավ, ոչ որ էլ քեզ չի խանգարի. հանգիստ կնստես ու ընդունիչդ կպատրաստես։

Ու վեր կացան տնեցիները՝ Մուկուչի պապը, տատը, երկու քույրերն ու մայրը միասին թութ ուտելու գնացին։

— Հայրիկիդ էլ կզանգահարենք, գործից ուղիղ մեզ մոտ գա, — աստիճանների վրայից ուրախ-ուրախ ասաց մայրը, — հանգիստ կնստես ու ընդունիչդ կպատրաստես. քո բաժինը կբերենք։

Մուկուչի լացն ուղղակի գալիս էր. ինչու՞ պիտի թութն այսքան շուտ հասներ։ Միտքը՝ հորաքրոջ բակում, մեկ եղունգները կրծելով, մեկ գլուխը քորելով, նա մի քանի անգամ սենյակից-սենյակ անցավ. ձղայնությունից չորս ճանճ սպանեց և քիչ էր մնում բյուրեղապակյա ծաղկամանը ջարդեր։ Սառնարանից հանելով փոքր քրոջ բաժին պաղպաղակը, բավականին լիզեց և քաղցր պաղպաղակը լիզելու ժամանակ դառնորեն հիշեց, որ գրպանի ընդունիչ պիտի պատրաստի, և ...

3

Թերթելով «Յունի տեխնիկի» բազմաթիվ համարները, որտեղ բացատրությունների հետ միասին մեկ առ մեկ գծագրված էին գրպանի ընդունիչի մասերը, մի քանի բառ բառարանից դուրս քաշելով, մի քանիսը կռահելով, մի մասն էլ չհասկանալով, վերջապես, նա այնպես հասկացավ, որ ընդունիչ պատրաստելու համար նախ և առաջ հարկավոր է լավ շաշկի խաղացող լինել։ Բայց երկար մտորելուց հետո, համկարծ նա գլխի ընկավ, որ խոսքը ոչ թե շաշկի լավ խաղալու մասին է, այլ այն մասին, որ ընդունիչի համար կարելի է օգտագործել շաշկիի տուփը։ Մուկուչի պապի շաշկին ակնոցի հետ միասին պահարանի գլխին էր գտնվում։ Քարերը դատարկելով, որոնցից մի երկուսն էլ պահարանի հետևը գլորվեցին, նա սեղանի վրա դրեց պլաստմասայե գեղեցիկ տուփը և բավականությունից այնպես շփեց ձեռքերը, ասես ինքն էր պատրաստել։ Այժմ հարկավոր է ծայնալիքների համար տուփի վրա ձևավոր ծակեր բանալ. բերեց նրբասղոցը, հենափայտը անխղճորեն ամրացրեց միանգամայն նոր ճաշասեղանի եզրին, և երեք սղոց ջարդելուց հետո, ջարդեց և կափարիչը...

Է՜հ, այդքան տանջվելուց հետո Մուկուչն այնպես զայրացավ, որ նրբասղոցը շպրտեց բազմոցի կողմը։ Որ չշպրտե՞ց, պատկերացնո՞ւմ եք, ամենավարժ ժոնգլյորի նետած օղակի կամ Տեխա-

ում վայրի ձիեր որսացող մուստանգերի օղապարանի պես նրբասղոցն ընկավ կատվի վիզը. սա էլ մի այնպիսի ճվոց դրեց, ասես բերանն էին պատռում: Հենց այդ անտանելի ճվոցն էր պակաս: Մուկուչն ընկավ կատվի հետևից, սա էլ իրեն գցեց կարի մեքենայի հետևը: Էլ ի՞նչ գրպանի ընդունիչ. Մուկուչն այժմ մտածում էր կատվին սենյակից դուրս գցելու մասին, ասես այդ խեղճն էր վատ սղոցել և ջարդել շաշկու տուփի կափարիչը: Երբ նա ձեռքը պարզում էր կատվի պոչից բռնելու, սա այնպես էր փշշացնում ու չանգռում, որ շուտով բանը իսկական ճակատամարտի հասավ: Բայց մի՞թե Մուկուչը կարող էր իր կրծոտած եղունգներով կռիվ տալ կատվի սուր ճանկերի դեմ: Ճիպոտ էր պետք, բահն և կամ... Հենց այստեղ էր, որ նա հիշեց կարի մեքենայի պտուտակահանը, և երբ քաշեց դարակը, ուրախությունից աչքերը փայլեցին: Ասեղների տուփը ոչնչով պակաս չէր շաշկիի տուփից:

Մուկուչը մոռացավ կատվին, և որովհետև բավականին վարժվել էր սղոցելու մեջ, ասեղների տուփից մի հիանալի բան ստացվեց: Ուռա՜, մնում էր ընդունիչին անուն դնելը և միջի բաները, այսինքն՝ բուն ընդունիչը:

Անուններ ինչքան ասես կային. «Պիլիգրիմ», «Իունկան», «Ֆանտազիա», «Սպուտնիկ», բայց դրանք բոլորն էլ երկար անուններ էին, իսկ տուփը՝ փոքրիկ: Եվ ահա, հանկարծ... անունը գտնվա՜ծ էր. «Մ—1», այսինքն՝ «Մուկուչ—1»:

## 4

Ամենից առաջ և ամենից գլխավորն այն էր, որ ինչքան էլ սեղանը լցվել էր ընդունիչի ներքին մասերով, բայց մի մասը պակասում էր: Այդ մասի անունը, ճիշտն ասած, ես էլ եմ մոռացել, կյանքումս երբեք գրպանի ընդունիչ չեմ պատրաստել:

Ինչևիցե, այդ ձեր չիմացած ու իմ մոռացած մասի համար Մուկուչը վազ տվեց իրենց հարևան ֆիզիկոս Դողոխյանի մոտ: Վերջինս, բազկաթոռի մեջ թաղված, մի ահագին գիրք էլ ծնկներին, արագ-արագ ինչ-որ նշումներ էր անում: Նա այնքան էր տարվել իր գործով, որ երկար ժամանակ չէր նկատում իր կողքին ցցված Մուկուչին:

Մուկուչը մի երկու անգամ քիթը քաշեց ու զոռով հազաց:

— Ա՜, Մուկուչի՞կ, ի՞նչ կա,— հարցրեց ֆիզիկոսը՝ ցնցվելով և հաստ ապակիների տակից Մուկուչի վրա հառելով իր մանրիկ, կարմրած աչքերը:

— Ընկեր Դողոխյան,— աղերսական ձայնով ծորտվեց Մուկուչը,— եկել եմ մի բան խնդրեմ. կըտա՞ք:

— Ասա տեսնեմ ինչ բան է. թե որ ունենամ, ինչո՞ւ չեմ տա,— ժպտալով ասաց Դողոխյանը:

— Ինչպե՞ս ասեմ, ընկեր Դողոխյան, էն, էլի... երեք ոտանի է, գլխարկի նման, ինքն էլ մատնոցի չափ է:



— Երեք ոտանի՞, գլխարկի նման և մատնոցի մեծությա՞մբ,— զարմացավ ֆիզիկոսը,— առաջին անգամ եմ լսում:

— Դե... ո՞նց ասեմ... «Յունի տեխնիկ»-ում է...

— Բան չեմ հասկանում, Մուկուչիկ, բան չեմ հասկանում,— տարակուսանքով, ձեռքերը տարածելով ասաց Դողոխյանը.— «Յունի տեխնիկ», մատնոցի մեծությամբ, երեք ոտանի, գլխարկի նման...

— Ազնիվ պիոներական, գլխարկի նման,— վրա բերեց Մուկուչը,— դե ո՞նց ասեմ... Չարլի Չապլինի գլխարկի նման մի բան է. ո՞նց չգիտեք:

— Բայց... սատանան տանի, քեզ հետ ինչ-որ բան է կատարվում, դու հո հիվանդ չե՞ս,— վարի շրթունքը կծելով, հուսահատ շշնջաց ֆիզիկոսը:

— Ի՞նչ եք ասում, ընկեր Դողոխյան, ես գրպա-

նի ընդունիչ եմ պատրաստում,— վրա բերեց Մուկուչը լացակումած։

Այստեղ Դողոխյանը մատը կծեց.

— Դրպանի ընդունիչ... ասենք թե հասկանում եմ. լավ, բայց ի՞նչ կապ ունի գրպանի ընդունիչը Չարլի Չապլինի գլխարկի հետ։

— Մի մասը պակաս է, ընկեր Դողոխյան, էդ մասը, գե, ո՞նց ասեմ, նման է, էլի, գլխարկի նման է... Երեք ոտ էլ ունի... հիշեցի, տրի ոտ է անունը, փոքրիկ, մատնոցի մեծությամբ, երեք լար էլ տակից դուրս եկած։ Դե, տրի՝ ռուսերեն երեք է, ոտն էլ հայերեն...

Մուկուչն այս որ չասա՞ց, Դողոխյանը մի այնպիսի քահ-քահ սկսեց, որ եթե այդ քահ-քահ-ները իրար հետևից շարեն, մի էջից ավելի կլինի։ Մուկուչն այստեղ զգաց, որ հիմարություն է դուրս տվել և քիչ մնաց ամոթից թողներ ու հեռանար։

— Դու ուրեմն տրիոդ* ես ուզում, տրիոդ, վա՜յ, Մուկուչիկ, վա՜յ...

## 5

Ներս ընկնելով սենյակ, Մուկուչն առաջին հերթին բաց արեց «Յունի տեխնիկը», նայեց ու նայեց, գծեր ու փակագծեր, լատինական տառեր ու սլաքներ, բայց օգուտն ի՞նչ։ Վերջապես նա կարծես հասկացավ, թե ինչը ինչին և ինչով պիտի միացնել։ Տաքացրեց զոդիչը, թաթախեց մուրաբայի ափսեի մեջ լցրած աղաթթվի լուծույթի մեջ, խեժոտեց, բայց հետո ինչքան փորձում էր զոդիչի ծայրով անագի գոնե մի փոքրիկ կաթ հասցնել իրար միացվելիք բարակ պղնձալարերին՝ բան դուրս չէր գալիս։ Եվ ինչպես որ քրտինքն էր ծորում Մուկուչի քթի ծայրից, անիրավ անագն էլ պապղում էր շիկացած զոդիչի ծայրին ու հանկարծ՝ կը՜լթ, սնդիկի անհնազանդ կաթիլների պես ցրիվ գալիս գետնին։ Եվ ահա, մի անգամ էլ որ անագով քարծված շիկացած զոդիչը նա չմոտեցրե՞ց «Մ—1»-ին, մի «փը՜ս» եղավ, մի ճճրթոց, որ... էլ ի՞նչ որ, երբ չկար ասեղների տուփի կեսը, երբ Չապլինի գլխարկը ծխի ու մրի մեջ էր կորել, երբ նուրբ պղնձալարերից գնդասեղի գլխից էլ փոքրիկ գնդիկներ էին մնացել...

## 6

Եկավ ուրախ երեկոն, ու երեկոյի հետ եկան ուրախ տնեցիները։ Տուն լցվեց աղմուկ-աղաղակով, ասես ամառանոցից էին վերադարձել։

— Համա թութ էր, հա՜,— ասես Մուկուչի ջգրու, շրթունքները ծպպացնելով, անընդհատ կրկնում էր պապը,— էսպիսի թութ ես մեկ էլ ջահել ժամանակս եմ կերել։

Խե՜ղճ Մուկուչ. ատամները սեղմած ո՞նց էր կուչ եկել բազմոցի ծայրին։

Բայց արի տես, որ պապը բավական չէր իր թթով, մայրիկն էլ սենյակ մտավ, թե.

— Բալի՛կ ջան, ընդունիչը պատրաստեցի՞ր. դե բե՛ր մի տեսնենք։

Մուկուչը չգիտեր ինչ պատասխաներ, ավելի շուտ, նա ուզում էր չլսելու տալ, երբ հայրիկը, որ արտակարգ ուրախ և հուզված էր երևում, հանկարծ ասաց.

— Սպասե՛ք, սպասե՛ք, ընդունիչը հետո. կես րոպե է մնում։

— Ինչի՞ն,— զարմացավ մայրիկը։

— Հաղորդմանը. այսօր ռադիոյով մեր գործարանի մասին են խոսելու։

Մուկուչի սիրտը թունդ ելավ։ Մինչ հայրիկը մեկը մյուսի հետևից շրխկացնում էր ռադիոընդունիչի սպիտակ ստեղները և զարմանում, որ ցուցատախտակը չի լուսավորվում, Մուկուչի սիրտը քիչ էր մնում տեղից թռչի։

— Է՛ս ինչ բան է, է՛ս ինչ թարսություն է,— հևալով կրկնում էր հայրիկը,— է՛ս ինչ բան է, փչանալու ժամանա՞կ գտավ...

Էլ չհամբերեց և ջղայնորեն ոտքի ելնելով, համարյա մի շարժումով շուռ տվեց ռադիոընդունիչն ու բաց արեց հետևի կափարիչը։ Ռադիոընդունիչի մեջ նա չտեսավ մագնիսական անտեննան և կոճերը։



— Ո՞վ է ձեռք տվել սրան,— հանկարծ շուռ գալով հարցրեց հայրիկը և, ժամացույցին նայելով, թուլացած ընկավ աթոռին։— Սա քո արածն է, չէ՞,— դարձավ նա Մուկուչին,— ահա թե ինչպես ես գրպանի ընդունիչ շինում։

Հայրիկը միայն այնքանը կարողացավ իմանալ կմկմացող Մուկուչից, որ նա ռադիոընդունիչի միջից հանել էր մագնիսական անտեննան, որպեսզի օգտագործի միջի ֆերիտը, իսկ տրանսֆորմատորի փաթույթի համար էլ կոճեր էին պետք եկել։

* Տրիոդները գրպանի ընդունիչում փոխարինում են լամպերին։

— Բա քո արածը բանի նմա՞ն է,— գլուխն օրորելով վրա բերեց հայրիկը,— մենք մի ամբողջ շաբաթ հաղորդմանը սպասենք, իսկ դո՞ւ...

— Լավ, լավ, աշխարհը չքանդվեց,— օգնության հասավ մայրիկը,— սիրտդ լայն պահիր. այսօր հաղորդումը վաղն էլ կհաղորդի:

— Դե թող լի՛,— ձեռքը թափ տվեց հայրիկը:

— Ճիշտ ա ասում, բալա ջան, սիրտդ մի՛ կոտրի. բեր, մի շաշկի խաղանք, ամեն ինչ լավ կլինի,— ասաց պապիկը:

Մայրիկն ուրախ, որ գործը այդքան քաղցրությամբ վերջացավ, ձեռքը գցեց պահարանի գլխին, բայց... ի՜նչ շաշկիի տուփ. չկար ու չկար: Պարզ էր, որ չէր գտնվելու:

Երբ վերջապես պապին հասկացրին, որ շաշկիի տուփն էլ է գնացել Մուկուչի այդ չարաբաստիկ գրպանի ընդունիչի ճամփին, պապը տխրեց:

— Ոչ բարով էսօր էդ թուղթը ուտեի,— հառաչելով ասաց նա,— ոչ բարով:

— Իսկ ո՞ւր է, ո՞րտեղ է այդ քո գլուխ-գործոցը,— ըմբիծայ տալով Մուկուչին դարձավ հայրիկը,— ձայն չես հանում, բեր գոնե ընդունիչի ձայնը լսենք:

Բայց հենց այդ պահին նախասենյակից լսվեց Լիզիկի լացակումած ձայնը.

— Ես ո՞վ է պաղպաղակս լիզել...

— Կատուն, ո՞վ, դա էլ եք ինձ վրա գցո՞ւմ,— հանկարծ, ոտքի ելնելով, իր ամբողջ ջղայնությունը Լիզիկի ու խեղճ կատվի վրա թափեց Մուկուչը և... սկսեց լաց լինել:

Տնեցիները մի բան միայն իմացան, որ գրպանի ընդունիչը չկա, չի եղել ու, ով գիտե, երբ կլինի:

Բայց ես համոզված եմ, որ մի օր, գուցե հենց այս երկու օրվա մեջ, երբ Մուկուչի մայրիկը կարելու գործ ունենա, կբացվի նաև ասեղների տուփի անհայտացման պատմությունը. իսկ ամենագլխավորը՝ վստահ եմ, որ այս տարի, գուցե և մի երկու տարի հետո, երբ, ինչպես ասում են, Մուկուչի խելքը գլուխը գա, նա ինքը կխոստովանի, թե ինչպիսի ցուցամոլն ու պարծենկոտն է եղել: Չէ՞ որ եթե նա սովորեր, լիներ ուշադիր և աշխատասեր, երբեք այդպիսի ծիծաղելի դրության մեջ չէր ընկնի:

Այդ դեպքում, կասեք դուք, չէր էլ լինի գրպանի ընդունիչի պատմությունը:

Ե՜հ, թող չլիներ, բայց չէ՞ որ գրպանի ընդունիչ կլիներ:





# „ԱՊԱԳԱՅԻՑ“ ԵԿԱԾ ՏՂԱՆ

Կ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Երեք ամիս առաջ մեր շենքը դեռ չկար: Նրա տեղը հին տների փլատակներ էին ու մի երկար բարդու ծառ: Բարդին հիմա էլ կա, իսկ փլատակների տեղը մեր չորսհարկանի շենքն է, ուր ապրում ենք մենք. ես, փոքր քույրս՝ Նարինեն, հայրիկս, մայրիկս և երկու տատիկներս: Մեր շենքում շատ մարդ է ապրում, բայց ամենանշանավորը Վարոսն է...

Ես այդ Վարոսին այնպես կդմբստեի՜, հենց միայն նրա համար, որ Նարինեն շատ է հպարտանում նրանով: Բայց ես այդ չեմ անի, որովհետև կկարծեն, թե նախանձում եմ:

Գիտե՞ք ինչով է նշանավոր դարձել Վարոսը. իր փչոցներով: Բոլորին հավատացրել է, թե ինքը եկել է ապագայից: Ո՞վ չգիտի, որ ապագայից ոչ ոք էլ չի կարող գալ. ուրիշ բան է՝ անցյալից: Այ, օրինակ՝ իմ երկու տատիկներն էլ անցյալից են եկել:

Բայց ինչ էլ տեղը-տեղին է հորինում: Ասում է՝ այնտեղ՝ ապագայում, բոլոր տների բակերում ու փողոցներում զանազան մրգերի ծառեր են աճում:

— Այդպե՞ս էլ փչոց,— ծիծաղում եմ ես,— տղաները կթողնե՞ն, որ միրգ մնա ծառերի վրա:

— Քեզ նման տղաներն,— ասում է,— ճյուղերն էլ կկոտրեն, բայց այնտեղ տղաները և՛ խելոք են, և՛ համբերաշխ: Նրանք իրենք են տնկում, խնամում ծառերը:

— Ճիշտ է, ճիշտ է,— ասում է Նարինեն ու ծափ տալով պտտվում շուրջս, այսինքն բարկացնում է ինձ:

Բայց իմ պետքն էլ չէ, ես միայն բռունցք եմ ցույց տալիս: «Լավ,— ասում եմ ինքս ինձ,— հիմա ձեզ այնպես մոլորեցնեմ...» — ու սկսում եմ մտածել...

Իսկ այդ ժամանակ, ընը՛, ատիճանների տակից հայտնվում է Բաբկենի գզգզված մազերով գլուխը:

— Ողջո՜ւյն,— ձայնով մեկ կանչում է Բաբկենը:

— Ի՞նչ ես բղավում, — ասում եմ նրան:

— Իսկ դո՞ւ ինչո՞ւ ես բղավում:

Այդ դո՛ւ ես բղավում, — ասում եմ ես:

— Ո՛չ, — ասում է նա, — դու ավելի շատ ես բղավում:

— Լա՛վ, լա՛վ, մի՛ վիճեք, — ծիծաղում է Վարոսը: — Մեզ մոտ երբեք այդպիսի բանի համար չեն ամչնում...

— Ձեզ մոտ՝ այդ որտե՞ղ, — հարցնում է Բարկենը:

— Ապագայում, — ասում է Վարոսը:

Բարկենը նայում է ինձ, ես աչքերս էլ չեմ թարթում: Իսկ Նարինեն շարունակ գլխով է անում: Բոլորս լռում ենք: «Երևի հավատաց, միամիտ» — մտքումս ասում եմ ես: Բարկենը կանգնել է ու քթով փափսացնում է այնպես, որ հետն էլ սուլոց է դուրս գալիս: Նա այդ ձևով մտածում է:

Մեկ էլ տեղից վեր թռավ ու սկսեց քրքջալ.

— Լավ խաբեցի՛ք ինձ, հա՛, հա՛, հա՛, հա՛, լա՛վ խաբեցիք:

— Իսկի էլ չէ, — պատասխանում է Վարոսը. — ես խաբել չգիտեմ, չեմ սիրում:

Բարկենը նայում է ինձ ու աչքով անում.

Հա, իհա՛րկե, հավատում եմ... Երևի ձեր այդ ապագայում բոլորն էլ ճշմարտախոս են...

— Չէ՛, ինչու՛, ստախոսներ էլ են պատահում, «մնացուկներ» էլ:

— Իսկ ի՞նչ բան են «մնացուկները», — հարցնում եմ:

Դե մեզ մոտ ծույլ, վատ մարդկանց «մնացուկներ» են անվանում:

Նարինեն բարձրաձայն ծիծաղում է: Ինչո՞ւ: Նայում ենք նրան, իսկ նա թե՝

— Ուրեմն իմ եղբայրիկն էլ է «մնացուկ», որովհետև ծույլ է...

Նա այդ իմ մասին է ասում:

Բարկենը հռհռում է, իսկ ես ուզում եմ մի հատ հասցնել Նարինեին: Բայց նա կանգնում է երրորդ հարկի միջանցքի բաց պատուհանի գոգին ու բռպառնում.

— Հե՛նց մոտ ես եկել, այստեղից կցատկեմ:

Հետո Վարոսն ասում է, որ ապագայում արհեստական լիճ կա, լճի ափին սպորտային հրապարակ, հրապարակում՝ ջրացատկի աշտարակ և ինչ գիտեմ էլ ինչեր:

Հա՛, հետո գիտե՞ք էլ ինչ է ասում, էլեկտրականությունը, կինոն, բաղնիքը այնտեղ անվճար են...

— Մի՛ փչիր, — ասում եմ, — այդպես միայն կոմունիզմի ժամանակ կարող է լինել:

Իսկ նա.

— Ապագայում էլ մարդիկ ուզում են, որ կոմունիզմը շուտ գա:

— Բայց չէ՞ որ դու ապագայից ես գալիս, կոմունիզմը հենց ինքը ապագան է...

Այստեղ խոսքս կիսատ մնաց, որովհետև Վարոսն այնպես քրքջաց, որ մենք էլ նրանից վարակվելով՝ սկսեցինք ծիծաղել: Մի կուշտ ծիծաղելուց հետո ասաց.

Ես էլ զարմանում եմ, թե ինչու ինձ չեք հավատում: Չէ՞ որ մենք գյուղից ենք եկել, հայրիկիս տեղափոխեցին այստեղ: «Ապագան» մեր կոլտնտեսության անունն է, գտնվում է Էջմիածնի շրջանում, Քասախ գետի ափին:

— Խորամա՛նկ, — ասացի, — ուրեմն այդ բոլորը ձեր կոլտնտեսության մասին էիր պատմում: Իսկ մենք կարծում էինք...



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Դուք էլ, ի՞նչ, կարծում էիք ապագայի օրացույցի՞ց եմ դուրս թռել...

Նայեցինք միմյանց, ծիծաղեցինք, նայեցինք ու ծիծաղեցինք այնքան, որ ունքերս ցավեցին:

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

## ԽՈԶՆ ՈՒ ՆԱՊԱՍՏԱԿԸ

Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ



Ցեխոտ, կեղտոտ
Շորերն հագին,
Խոզը մտավ
Ջբոսայգին:
Այստեղ մեր քաջ
Նապաստակը
Ուզեց ցույց տալ
Նրան կարգը:
Իսկ խոզ փնթին,
Քիթը տնկած,
Այն շլդիկին
Դարձավ ասաց.
— Էլ գործ չունե՞մ,
Սաքրեմ, թափեմ,
Մազեր սանրեմ,
Գոտի կապեմ,
Բլուզ, շալվար
Կարգին կոճկեմ.
Հո ես քեզ պես
Պճնամոլ չե՞մ:



## ԱՂՄԿԱՐԱՐ ԹՈՒԽՍԸ

Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

— Սելա՛վ, սելա՛վ,—
Գոչեց անհույս
Ու դուրս ելավ
Խելառ մի թուխս:
— Ի՞նչ պատահեց,
Ա՛յ տնաքանդ,—
Հարցմունք արեց
Քնկոտ մի բադ:
— Էլ ի՞նչ լինի,
Ա՛յ բադ ախպեր,
Աշխարհն ավեր,
Սուգ ու շիվան,
Էս ի՞նչ ցավ էր,
Էս ի՞նչ դիվան:

Բայց իզուր էր
Վայնասունը:

Գիտե՞ք ինչ էր
Եղել նրան.
Մի պուտ ջուր էր
Ընկել վրան:



# ԴԴՈՒՄ

Վ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

*— Չորս անգամ չորս ի՞նչ կանի,—նորից հարցրեց Անիկը՝ հակվելով դեպի եղբայրը:*

*Լեռնիկը գրչակոթը տանում էր բերանը, նայում առաստաղին, նայում էր քրոջ երեսին, բայց ոչինչ չէր ստացվում: Նրա գլխում թվերը, ինչպես օճառի պղպջակները օդում, անկարգ, անկանոն քշվում էին, պայթում: Նա ուզում էր ժամ առաջ ազատվել դասերից, շունչը կտրող քրոջ ճնշումից, ուզում էր ճիշտ պատասխանել, շուտ վերջացնել և բակում խաղալ, ցատկոտել: Եվ հիշեց՝ մեկ, երկու, երեք, չորս, ես կպարեմ տասնըչորս...*

*— Տասնչորս:*

*— Դդո՜ւմ,—ջղայնացավ Անիկը և գնաց խոհանոց՝ ամանի հատակին մնացած մուրաբան ուտելու, որպեսզի մի կերպ կարողանա հանդարտվել:*

*Երբ նա խոհանոցից վերադարձավ, աթոռի վրա տեսավ մի խոշոր դեղին դդում՝ կես մատի չափ կոթը գլխավերևին: Սկզբում նա զարմացավ, հետո ... հետո հասկացավ և դդումի պես գունատվեց:*

*— Վահ, այդ ի՞նչ արեցի, այդ ի՞նչ արեցի,—կրկնում էր նա և գլուխն ափերի մեջ առած՝ պտտվում Լեռնիկ-դդումի շուրջը:*

*Նա վախենում էր դիպչել դդմացած եղբորը և լաց էր լինում՝ չիմանալով ինչ անել: Ի վերջո, վարանոտ դիպավ դդումին, ապա ավելի համարձակ, կամացուկ շոյեց և աղիողորմ ձայնով ասաց.*

*— Լեռնիկ ջա՜ն, դդում ջա՜ն,—և հեծկլտաց:*

*Բայց Լեռնիկ-դդումը չէր պատասխանում: Անիկը քնքշանքով գրկեց դդումը և նույնիսկ համբուրեց:*

*Այդ պահին ներս մտավ մայրը, ամեն մի ձեռքին՝ մթերքով լի մի ցանց: Նա ապշած քարացավ տեղում:*

— Ինչո՞ւ ես լաց լինում, սա ի՞նչ դդում է, ինչո՞ւ ես դդումը համբուրում:

Անիկը մոր գիրկը նետվեց և կցկտուր պատմեց եղելությունը: Մայրը մեկ մտածեց, թե աղջիկը խելագարվել է, հետո, թե՝ բա այսքան խոշոր դդումը որտեղի՞ց հայտնվեց... Եվ նա վազեց հարևանի մոտ:

Մեկ, երկու, երեք, չորս... տասնչորս րոպեից հետո մայրը «Շտապ օգնության» ավտոմեքենան դիմավորեց փողոցում: Բժիշկը և բուժքույրերը հանգիստ բարձրանում էին իրենց առջև ընկած կնոջ հետևից, որը զայրանում էր նրանց դանդաղկոտության վրա, թեև, ճիշտն ասած, շտապելու կարիք չկար. դդումները ուշ են փչանում:

Անիկը լսել էր ոտնաձայները և քաշվել էր սենյակի մի անկյունը՝ դիտելու համար, թե ինչ պիտի կատարվի: Բժիշկը ներս մտավ և մոտեցավ Անիկին:

— Ո՛չ, նա չէ,—գոչեց մայրը:

— Բա ո՞վ է,—հարցրեց բժիշկը:

— Ահա սա՛,—կինը ցույց տվեց դդումը:

— Ի՞նչ,—չհասկացավ բժիշկը և ուշադիր նայեց այլայլված կնոջը:

— Գուցե և նա է,—տարակուսական շարունակեց կինը՝ ակնարկելով անկյունում կուչ եկած Անիկին: «Գուցե և դու»—մտածեց բժիշկը կնոջ մասին և ասաց.

— Բացատրե՛ք, լսում եմ:

Եվ մայրը պատմեց: Բժիշկը շվարած քորում էր գլուխը և ակամա նորից ու նորից նայում իր մեծության արտասովոր դդումին:

Վերջապես, նա առաջարկեց, որ բոլորով միասին գնան հիվանդանոց: Մի պատգարակ բերին, վրան դրին դդումը և, հետաքրքրասեր հարևանների հայացքների ուղեկցությամբ Անիկն ու նրա մայրը հետևեցին դդմացած Լեոնիկին:

Հիվանդանոցում արտակարգ լուրը ոտքի հանեց բոլոր բժիշկներին: Խելք տվին, խելք առան, վերջը որոշեցին ռենտգենով ուսումնասիրել անսովոր դդումը: Ռենտգենը ցույց տվեց, որ շատ բարակ կեղևի տակ, դդումի մեջ ծալապատիկ նստած՝ Լեոնիկը կուտ է չրթում: Տեսան թե չէ՝ մայր ու աղջիկ և՛ լաց եղան, և՛ ծիծաղեցին: Բժիշկներից մեկն առաջարկեց.

— Կեղևը դանակով հեռացնենք:

Մյուսն առարկեց.

— Կեղևը և՛ պինդ է, և՛ շատ բարակ, երեխան կվիրավորվի:

— Դդումը դնենք արևի տակ՝ թող ինքն իրեն ճաքի,—ասաց երրորդը:

— Դա երկար կտևի,—առարկեց չորրորդը:—Կոտերն ուտելուց հետո երեխան սովամահ կլինի:

Վերջապես, ամենախելացի բուժումը գտավ «Շտապ օգնության» բժիշկը:

— Ընկերնե՛ր,—ասաց նա,—պետք է հաշվի առնեք, թե ինչն էր պատճառը, որ Լեոնիկը դդում դարձավ: Նա, ընկերնե՛ր, չկարողացավ պատասխանել այն հարցին, թե չորս անգամ չորս ի՞նչ կանի: Եթե ճիշտ պատասխանը գտնի, ինքն իրեն կդառնա առաջվանը:

Եվ բժիշկը առաջարկեց հեռախոսի թելը միացնել դդումի կոթին, կապ հաստատել նրա հետ՝ նրանից ճիշտ պատասխան ստանալու համար:



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Այդպես էլ արեցին:

— Ալլո՛, ալլո՛,—ձայն տվեց բժիշկը:

— Լսում եմ,—պատասխանեց Լեոնիկը:

— Ուզո՞ւմ ես առաջվանը դառնալ:

Լեոնիկը, որն սկսել էր ձանձրանալ, մի քիչ խորհեց, հետո պատասխանեց.

— Այո՛, ուզում եմ:

— Ապա՛ մտածիր և պատասխանիր, թե չորս անգամ չորս ի՞նչ կանի:

— Ի՞նչ իմանամ,—ասաց Լեոնիկը:

— Չորս անգամ չորս դասավորիր դդումի կտերը և իսկույն կիմանաս:

Լեոնիկը դժվարությամբ առաջը փոքր-ինչ տեղ բացեց և այդպես էլ դասավորեց կտերը:

— Հը, ի՞նչ արեց,—հարցրեց բժիշկը։
— Քառակուսի,—պատասխանեց Լեռնիկը։
— Դրո՛ւմ,—նորից ջղայնացավ Անիկը։
— Արդեն դրում է. էլ ի՞նչ ես ասում,—հանդիմանեց մայրը։
Եվ բժիշկը խրատեց Անիկին.
— Ծաղրանուն կպցնելը հեշտ է, շնորհք ունես՝ օգնիր, որ գտնի։
— Հուշե՞մ,—հարցրեց Անիկը։
— Ո՛չ, այդպես չի կարելի,—ասաց բժիշկը,— դու միայն բացատրիր. թող ինքը գտնի, այլապես մինչև վերջը դրում էլ կմնա։
Անիկը բերանը մոտեցրեց խոսափողին և ասաց.
— Լեռնիկ ջան, քո առաջը շարած կտերը հաշվիր և կիմանաս։
Լեռնիկը պատասխանեց.
— Չորս անգամ չորս կանի ինը։
— Այդ ինչո՞ւ ինը,—հարցրեց Անիկը։
— Ի՞նչ իմանամ,—պատասխանեց Լեռնիկը,— ուշադրություն չդարձնելով այն բանին, որ խոսակցության ժամանակ յոթ հատը չոթել էր արդեն։
— Նորից շարիր չորս անգամ չորս,—համբերությամբ խորհուրդ տվեց Անիկը։
Քիչ հետո Լեռնիկը պատասխանեց.
— Շարեցի։
— Հաշվի՛ր։
Շատ չանցած պատասխանը եղավ.
— Տասնվեց։
Ասաց թե չէ, տեղն ու տեղը առաջվա Լեռնիկը ցցվեց հավաքվածների առջև։ Նախկին դրումից մի կուտ անգամ չէր մնացել։ Բոլորն ուրախացան, իրար գրկեցին, շնորհավորեցին, ծիծաղեցին, կատակեցին ու ցրվեցին տները։
Երկու օր հետո, լրագրերից մեկում տպագրված էր մի հաղորդագրություն, որ պատմում էր այդ դեպքի մասին։ Հետո տրված էին լրացուցիչ տեղեկություններ. «Այդպիսի դեպքեր լինում են և ուրիշ ծաղրանուններ կպցնելու ժամանակ։ Բայց դա պատահում է երկու հազար տարին երեք անգամ։ Այդ երևույթի մասին հիշատակել է բժշկության հայր Հիպոկրատը։ Ով չի հավատում այդ ստին, թող դիմի հետևյալ հասցեով՝ Հին Հունաստան, Էգեյան ծով, Կոս կղզի, Երազանքների փողոց № 7։
Լրացուցիչ տեղեկությունների համար զանգահարել 4—12-34»։
Երբ Անիկը հոդվածը բարձրաձայն կարդաց վերջացրեց, Լեռնիկը հարց տվեց.
— Բա Հին Հունաստանում հեռախոս կա՞։
— Այդ մեր հեռախոսի համարն է։ Բա երեկ չբերեցի՞ն, Դը...
Բայց Անիկը ձեռքն անմիջապես դրեց բերանին։



# ՀԵՌԱԽՈՍԱՅԻՆ ԱՐԿԱԾ

Հ. ԲԱԴԱԼՅԱՆ

Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ

Ես շատ ընկերներ ունեմ։ Այնքան շատ, որ մայրիկս երբեմն ասում է.
— Շատ ընկերներ ունենալն էլ մի բան չէ։ Ամեն օր զանգահարում են քեզ, դուրս կանչում, կտրում դասերից։
Անկեղծ ասած, ես համաձայն չեմ մայրիկի հետ։ Նա հարգում է իմ ընկերներից միայն Կարենին, որը թեև գերազանցիկ է, բայց շատ մեծամիտ է։ Իսկ Գագոն չնայած այնքան էլ լավ չի սովորում, բայց և՛ ամենաուժեղն է մեր մեջ, և՛ առաջինն է, որ մազերը ետ է սանրում, աշխարհի բոլոր անվանի ֆուտբոլիստներին էլ անգիր գիտե։
Մայրիկս Գագոյին չի սիրում։
— Խելքը գնդակին է տվել,— ասում է նա։
Եթե ուրիշներն էլ ասեն, թե մեր դասարանցի Գագոն վատ տղա է, չհավատաք։ Ինչ ուզում է ասեն, ես Գագոյից մտերիմ ընկեր չունեմ։
Ամեն օր կեսօրին, երբ գալիս ենք դպրոցից և հարևան բակում հավաքվում են տղաները, Գագոն զանգահարում է ինձ, ու գնում ենք ֆուտբոլ խաղալու։ Իսկ որպեսզի մայրիկը չիմանա, որ Գագոյի հետ եմ, մենք ստեղծել ենք հեռախոսային պայմանական խոսակցություն։
Բայց մի օր էլ... Չէ՛, ավելի լավ է հերթով պատմեմ։ Տանը ես ու մայրիկս էինք։ Զանգը լսելուն պես մայրիկից շուտ վերցրի հեռախոսափողը և իսկույն ճանաչեցի Գագոյի ձայնը։ Հետո զգուշորեն ստուգեցի շուրջս և, հանդիպելով մայրիկի զննող հայացքին, ասացի.

— Բարև՛, Կարեն, դու քանի՞ խնդիր ես լուծել:

Այդ հարկավոր է հասկանալ այսպես. «Բարև, Գագո, ինչ լավ է, որ զանգահարեցիր»:

— Այդ ի՞նչ է, ձերոնք տա՞նն են, — հարցրեց Գագոն:

— Ա՛յ, հենց այդ խնդիրն է, որ չեմ կարողանում լուծել, — ասացի ես:

— Գիտե՞ս, որ Ռուբիկը ֆուտբոլի նոր գնդակ է գնել, — խոսեց Գագոն:

— Գիտեմ, Կարեն, — ասացի ես, դրա համար էլ 547-րդ խնդրի պատասխանը չեմ գտնում:

— «Թիմ-թիմ» ենք խաղալու Հայկենց բակի տղերքի հետ, — ոգևորեց Գագոն:

— Ա՛յ, եթե տնայինը բացատրեիր, շատ լավ կլիներ, — ասացի ես:

— Հիմա գալո՞ւ ես, թե՞ ոչ, — անհանգստացավ Գագոն:

— Իսկ քանի՞ հարցանի է խնդիրը, — հարցրի ես:

— 9 համար պիտի խաղաս, — ասաց Գագոն:



— Ասում ես ձեր տանը միասին լուծե՞նք, — հարցրի ես:

— Շտապ Հայկենց բակ արի, սպասում ենք:

Ես գիտեի, որ ինչի մասին էլ խոսեմ, հեռախոսի հաջորդ ծայրում Գագոն ինձ ճիշտ էր հասկանում:

Ես վարանոտ նայեցի շուրջս և տեսնելով մայրիկի ժպիտը, ձայնս բարձրացրի.

— Լավ, Կարեն, գալիս եմ միասին պարապենք:

Ու դեռ չէի հասցրել ներքև դնել հեռախոսափողը, երբ դուռը բախեցին:

Մայրիկը շտապեց բացելու: Ա՛յ քեզ զուգադիպությու՜ն:

Դռան մոտ կանգնած էր Կարենը:

# Զարթոնք

Լ. ԴՈՒՐՅԱՆ

Աչքը բացեց մի ծաղիկ,
Տեսավ երկինքը կապույտ,
Տեսավ լեռները կապույտ,
Տեսավ ջրերը կապույտ:

Ու չիմացավ, որ ինքն էլ
Կապույտ, կապույտ է այնքան,
Որքան երկինքն է կապույտ,
Որքան լեռներն են կապույտ,
Որքան ջրերն են կապույտ:

Նկ. Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# Արտասահմանյան հումոր

— Միստր Բրաունը ձեզ բարեկա՞մ է։
— Այո՛, հեռավոր բարեկամ։
— Ձեր ի՞նչն է։
— Եղբայրս։
— Եվ դուք նրան համարում եք հեռավոր բարեկա՞մ։
— Այո՛, իմ և նրա միջև 11 եղբայրներ կան։

— Ինչքան անգութ ես, Ջե՛յն. բա կարելի՞ է փիսիկի պոչից այդպես ուժեղ քաշել։
— Ես չեմ քաշում, մայրի՛կ, փիսիկը ինքն է փախչում։

— Վե՛ր, կաց, ծույլ տղա, տե՛ս, արևը ինչքան է բարձրացել, իսկ դու դեռ անկողնում ես։
—Բայց արևը մայր է մտնում ժամը 6-ին, իսկ ես քնում եմ ժամը 9-ին։

— Կես ժամ առաջ որդուս ուղարկեցի ձեզ մոտ մեկ կիլոգրամ խնձոր գնելու,—ասաց տիկին Մարիուսը։—Խնձորը կշռեցի և հազիվ 700 գրամ էր։

Մրգավաճառը հանգիստ պատասխանեց.
— Կարող է պատահել։ Բայց դուք կշռե՞լ եք ձեր որդուն։

Տոտոն քեռի Էմիլի հետ գնաց գյուղ, տատի մոտ։ Մի օր նա կաթով լի դույլի մեջ մի մուկ տեսավ և այդ մասին երեկոյան պատմեց քեռի Էմիլին։
— Դու, իհարկե, մուկը հանեցիր,— համոզված ասաց քեռի Էմիլը։
— Ո՛չ, չհանեցի, դույլի մեջ կատու գցեցի։

— Անդրե, դու սունկ սիրու՞մ ես։
— Այն էլ ինչպե՛ս։
— Բայց գիտե՞ս, որ կան թունավոր սնկեր։
— Իհարկե։
— Բայց ինչպե՞ս իմանալ, թե որ սունկն է թունավոր։
— Շատ պարզ. պետք է ուտել և սպասել։

— Միշել, լսել եմ, որ դու աշխարհագրություն շատ լավ գիտես։ Ասա, ուրեմն, ի՞նչ արեց Քրիստափոր Կոլումբոսը այն բանից հետո, երբ մի ոտքը դրեց Ամերիկայի հողին։
— Չգիտեմ։
— Բայց դա այնքա՜ն պարզ է. նա հողին դրեց նաև իր մյուս ոտքը։

# ԼՈՂՈՐԴ ՍԱԳՈՒԿԸ

Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Ջրից ելավ
Պստիկ սագը,
Լճափ տարավ
Մեր Սիսակը։

Հենց որ տեսավ
Կապույտ լիճը,
Ջուրը նետվեց
Ծուտ «կտրիճը»։

Խեղճ Սիսակի
Սիրտը հուզվեց,
Թվաց՝ սագիկն
Արդեն սուզվեց։

Բայց մեկ էլ, հո՛պ.
Ելավ երես,
Լողաց չոփ-չոփ
Մայր սագի պես։

Տղան նայեց
Ու զարմացավ.
— Սա ե՞րբ այսպես
Լողորդ դարձավ։



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

# ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

Մ. Ք. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մեր տուն գյուղից հյուր եկավ
Ծերո՜ւկ-ծերո՜ւկ մի մարդ.
Միրուքը՝ սո՜ւր ու երկար,
Ինքը՝ նիհա՜ր, գունատ։
Ծերուկ չէ, այլ վհուկ է,
Ե՜վ կորամեջք, և՜ սև,
Դեմքին այնքա՜ն կնճիռներ,
Ասես սարդն է հյուսել...

Քիչ է մնում, որ գրկեն
Մերոնք այդ սև մարդուն,
Իսկ ես, պարզ է, կծլկեմ,
Թե որ մտնի նա տուն։

Եվ գալիս է, չի նայում՝
Հենված փշոտ փայտին,
Ծանր փափախն իր հանում
Ու նստում է թախտին։

Մերոնք իսկույն շարվում են
Չորս բոլորը նրա.
Կանգնած տեղս հալվում եմ,
Ես ու՞ր փախչեմ հիմա...

Բայց ահա նա պարզեց իր
Ձեռքը երկար ու չո՜ր.
— Բարև՜, — ասաց, — մոտեցի՜ր, —
Ու տվեց մի խնձոր։

Հետո ասաց. — Ուզում ես
Հեքիաթ պատմեմ, լսիր։ —
Ու նա պատմեց, ո՜նց պատմեց,
Հրաշք հավքի մասին։

Տարված, վառված հեքիաթով՝
Մոտ եմ նստում այնքան.
Ես դևերին գլխատող
Քաջ Արեգն եմ, որ կամ,
Ես Արեգն եմ, իսկ ինքը
Սիրելի է այնքան,
Այն հեքիաթի ծերուկն է
Եվ կամ բարի արքան։

Ինչ լա՜վ արեց, որ եկավ,
Էլ ի՜նչ տգեղ ծերուկ,
Նա հեքիաթ է իսկական
Ու ամենքից սիրուն։

Ափսոս միայն, որ շուտով
Պիտի թողներ գնար,
Ա՜խ, մեզ պապիկ լիներ թող,
Միշտ մեր տանը մնար։

# ԾԻԼ ԵՄ, ԾԻԼ ԵՄ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ծիլ եմ, ծիլ եմ
Հազիվ մի մատ,
Ունեմ ցողուն,
Պստիկ արմատ։
Այս գարնանն եմ
Աշխարհ եկել.
Ինձ արև է
Կանաչ ներկել։
Եղանակին՝
Թե՛ ցուրտ, թե՛ տաք,
Ապրում եմ բաց
Երկնքի տակ...





# ՋԵԿՈՆ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ջեկոն քաղաքից է։ Նա ծնվել է մեծ շենքի երրորդ հարկի բնակարաններից մեկում։ Ավելի ճիշտ, ոչ թե բնակարանում, այլ դեպի բակը նայող պատշգամբում դրված ստվարաթղթե հսկայական արկղի մեջ, այն արկղի, որով մեկ ամիս առաջ տուն էին բերել «Ռուբին» հեռուստացույցը։ Ջեկոն ծնվել է հին նեյլոնե նասկիների, տանտիրուհու մաշված շապիկի և տան տղայի մորթե ականջավոր գլխարկից մնացած կտորտանքի վրա։ Ջեկոն շուն է, իսկ շան համար դրանից լավ անկողին չի էլ կարող լինել։

Ջեկոն մայրիկի հետ երկար չապրեց, հիմա երազի նման է հիշում մայրիկին ու երկու քույրերին։ Մայրիկը տաք էր. տաք են նաև ջեռուցման մարտկոցները, բայց մայրիկն ուրիշ էր, նա և՛ տաք էր, և՛ փափուկ։

Առաջին անգամ, երբ Ջեկոյին պատշգամբից սենյակ տարան, երեկո էր։ Ջեկոյի քունը տանում էր, բայց նրան տարել էին ցույց տալու։ Սենյակը լիքն էր մարդկանցով։ Ջեկոյի քնահարամ տեսքից բոլորն ուրախացան, իսկ մի կին հենց այսպես էլ ասաց.

— Վո՜ւյ, ջանի՛կս, ի՜նչ սիրուն շնիկ է...

Ջեկոն զարթնեց. դե, ով էլ լսի այդպիսի հաճելի բան, քնից կարթնանա։

Բոլորը հերթով գրկեցին նրան, փաղաքշեցին։ Ջեկոն հաճույքից կկոցեց աչքերը ու... հպարտացավ։

Այդ օրվանից Ջեկոն բոլորի սիրելին դարձավ։ Ազատ շրջում էր բնակարանի սենյակներում, մտնում մահճակալների տակ, շորի պահարանը և նույնիսկ՝ խոհանոց, որտեղից հաճելի հոտեր էին գալիս։

Նա տանտիրուհու հետ ամեն օր գնում էր զբոսանքի։ Փողոցում ու հարևան զբոսայգում բոլորը հիանում էին նրանով ու միշտ տանտիրուհուն հարցնում.

— Որտեղի՞ց եք գտել, ի՜նչ հրաշալի շնիկ է։

Ջեկոն հպարտանում էր, նա շատ լավ էր հասկանում, որ ինքը «հրաշալի շնիկ» է։ Սիրում էր իր նուրբ, սպիտակ մորթը, սև բծերով փոքրիկ թաթիկները, թաց դնչիկը, որ քանի՜-քանի՜ անգամ տեսել էր մեծ սենյակի մեծ հայելու մեջ։ Այդ դեռ բոլորը չէ։ Օրական երկու անգամ նա ավտոմեքենա էր նստում, մեկ այն ժամանակ, երբ տանտիրուհին տղային տանում էր դպրոց, մեկ էլ այն ժամանակ, երբ գնում էր բերելու։ Քանի՞ շուն կգտնես, որ ավտոմեքենա նստի։ Ջեկոն նստում էր ու... հպարտանում։ Նա նստում էր տանտիրուհու ծնկներին ու հենց այն ժամանակ էր աղոտ կերպով հիշում մայրիկին։ Մայրիկը տաք էր ու փափուկ, տանտիրուհու ծնկները նույնպես տաք էին ու փափուկ, մինչդեռ ջեռուցման մարտկոցը տաք է, բայց փափուկ չի...

Ջեկոն չէր սիրում շների ընկերությունը։ Փողոցում թե զբոսայգում նա արհամարհանքով լռում էր, երբ օտար շները փորձում էին նրա հետ զրույցի բռնվել։ Դե, Ջեկոն ի՞նչ զրույց բացեր նրանց հետ։ Դրանք բոլորը տգեղ էին, կոպիտ, խռպոտած։ Ջեկոն սովոր չէր։ Նա սիրում էր մաքրությունը, վայելչությունը, իր նուրբ, սպիտակ մորթը, սև բծերով փոքրիկ թաթիկները, թաց դնչիկը, որ քանի՜-քանի՜ անգամ տեսել էր մեծ սենյակի մեծ հայելու մեջ։ Անծանոթները վիճում, թավալվում էին փոշիների մեջ, իրարից ոսկոր էին խլում։ Եվ ի՜նչ էին այդ կեղտոտ ոսկորները, եթե խնդրեին էլ Ջեկոն չէր ուտի...

Ջեկոն զրուցում էր միայն մարդկանց հետ, մեկ

էլ՝ Մռռանի։ Մռռանը խոսում էր օտար լեզվով, կարծես ոչ թե խոսում էր, այլ՝ երգում։ Ջեկոն չէր հասկանում, բայց հաճելի էր։ Ջեկոն մի քիչ վախենում էր Մռռանից։ Մռռանը չէր թողնում դիպչել պոչին, փնչում էր, չանչում, իսկ եղունգները, հակառակի նման, սուր էին։ Մարդիկ՝ ուրիշ մարդիկ շոյում, փաղաքշում էին Ջեկոյին, կերակրում կաթով ու մսով...

Ջեկոն պատշգամբից նայում էր բակի պատահական շների վրա, բակով մեկ համարձակ հայտարարում էր.

—Դե գնա հա՛, քոսոտ, սրա՞ն տեսեք, հա՛, հա՛...

Շները լուռ հեռանում էին. նրանք լեզվակռիվ չէին սիրում, իսկ Ջեկոն երբեք մենակ բակ չէր իջնում...

* * *

Մեքենան կանգնած էր դպրոցի առաջ, վարորդը չկար, տանտիրուհին գնացել էր տղայի հետևից։ Մեքենայի պատուհանը բաց էր, իսկ փողոցով անցնում էր մի զարմանալի կենդանի։ Կենդանին երկար ականջներ ուներ, երկար դունչ, կռացել էր բեռան տակ, իսկ հետևից գնացող ծեր մարդը, չգիտես ինչու, անընդհատ ծեծում էր նրան։

Ջեկոն ինքն էլ չիմացավ, թե ինչպես դուրս թռավ մեքենայից։ Դե, եթե փողոցում այդքան հետաքրքիր բան լինի, էլ ո՞վ կմնա մեքենայում



Մոտ վազեց։ Երկար ժամանակ նայում էր բեռի տակ կռացած կենդանուն, հետո հաչեց մարդու վրա.

— Հա՛, հա՛, մի սրա փայտի՞ն նայեք, դե գնա՛, հա՛...

Մարդը, մտքի մեջ ընկած, անտարբեր գնում էր։

Ջեկոյի քթի տակ ծղրտաց մի ավտոմեքենա, հետո՝ մի ուրիշը։ Ջեկոն լիզապատառ եղավ, վազեց մայթով, դիպավ մի տղայի, ավելի շփոթվեց ու իրեն գցեց մի նեղլիկ փողոց։ Փողոցում տասնյակ տղաներ կային, ֆուտբոլ էին խաղում։ Ջեկոյին տեսան, ընկան հետևից.

— Վա՜յ, շնիկը, շնիկը...

Ջեկոն վազում էր, հա վազում, իսկ երեխաներն աղմկում էին։ Ջեկոն անցավ փողոցից-փողոց, նրբանցքից-նրբանցք։ Ամեն տեղ երեխաներ կային, որ ուզում էին բռնել նրան։ Վախից սիրտը մարում էր, էլ ցեխ ու ջուր չէր հարցնում, վազում, փախչում էր գլխապատառ...

Վերջապես աղմուկը լռեց, երեխաները ետ մնացին։ Ջեկոն մի քանի փողոց էլ վազեց, հետո հոգնած կանգ առավ։

Մթնեց։ Ջեկոն խճուղու վրա էր, կորել էր։ Քաշվեց մի կողմ, նստեց հանգստանալու։ Երկար ժամանակ հեռում էր, շունչը ետ բերում, հետո սկսեց մտածել. «Կորել եմ։ Ասենք, որ ետ դառնամ, մի կերպ ճանապարհը կգտնեմ, բա երեխանե՞րը...»

Նայեց թաթերին, կեղտոտ էին, քերծված։ Ջեկոն խղճաց ինքն իրեն ու սկսեց կամաց լաց լինել...

Խճուղով անցնում էին մարդատար ու բեռնատար ավտոմեքենաներ. մի ակնթարթ փայլում էին դրանց լույսերը, հետո էլի ամեն ինչ ծածկվում էր խավարով։ Բայց հանկարծ Ջեկոն ծանոթ հոտ զգաց, հետո ծանոթ տնքոց լսեց։ Ականջները սրեց, զարմացավ. խճուղով գալիս էր անծանոթ երկարականջ կենդանին, իսկ հետևից գնացող մարդը, չգիտես ինչու, դեռ ծեծում էր նրան։ Ջեկոն հիշեց իր ծաղրական խոսքերը, որ ասել էր այդ բարկացկոտ մարդուն, ու վախից կլանչեց։ Մարդը կանգնեցրեց երկարականջ կենդանուն, խոնարհվեց Ջեկոյի վրա, շոշափեց։ Հետո մտածեց ու բարձրացրեց վախեցած Ջեկոյին.

— Տանեմ թոռանս։

Երկար ժամանակ Ջեկոն օրորվում էր երկարականջի մեջքին, ինչ-որ խառնիխուռն բեռան վրա, վախից սսկվել էր։ Իսկ մարդը թոնթորում էր, հա թոնթորում ու, չգիտես ինչու, ծեծում երկարականջին։ Ջեկոն քնել էր, չիմացավ, թե ինչպես հասան գյուղ ու կանգնեցին մի դռան առաջ։ Երբ աչքերը բացեց, առաջին բանը, որ տեսավ, երկու խոշոր գամփռներ էին։ Ջեկոյի լեղին ջուր կտրեց։ Տնից դուրս եկավ մի երիտասարդ։ Երկարա-



կանչին ծեծող մարդը Ջեկոյին գրկեց ու երիտասարդին ասաց.

— Էշը ներս տար, բեռը ցած դիր։

— Է՜, հայրիկ, այս ավտոյի դարում էշից ձեռք չես քաշում, էլի՛, — ծիծաղեց երիտասարդը։

Մարդը Ջեկոյին տարավ տուն։

* * *

Արամը փոքրիկ էր, գամփռները՝ մեծ։ Ջեկոն սիրում էր Արամին, իսկ երկու գամփռներին չէր սիրում։ Ճիշտ է, նրանց վրա չէր համարձակվում հաչել, բայց հո աչքեր ուներ, տեսնում էր, որ կոպիտ են, կեղտոտ, վիճում են իրար հետ ոսկորի համար։

Արամը Ջեկոյին հաց էր տալիս, մի անգամ էլ անալի պանիր տվեց, բայց ո՛չ կաթ էր տալիս, ո՛չ միս, իսկ մսին, ճիշտն ասած, Ջեկոն կարոտել էր։ Տանը խոհանոց չկար, ասենք կար, բայց այնպես չէր, ինչպես քաղաքում։ Հոտերը համարյա նույնն էին, լավ-լավ հոտեր ու դրանց մեջ՝ մսի հոտը։

Միսը դրված էր ամանի մեջ, ամանը՝ օջախի կողքին։ Տատը գնացել էր աղի, իսկ Ջեկոն սոված էր։ Ատամներն իրենց-իրենց խրվեցին մսի մեջ։ Ջեկոյի մարմնով հաճելի սարսուռ անցավ...

Բայց դուք գիտե՞ք, թե ինչ է շերեփը։ Ջեկոն չգիտեր։ Շերեփը դա երկար պոչով, ծանր, կլոր փայտ է, որով տատերը ճաշը լցնելուց բացի, հարվածում են կատուներին ու շներին...

Ջեկոն կես ժամ վնգստում էր պարտեզի թթենու տակ.

— Վա՜յ, մամա ջան, վա՜յ, հա՛յ, հա՛...

Հետո Արամին գանգատվեց։

Արամն անտարբեր մնաց։ Ջեկոն խռովեց, կըծկըվեց թթենու տակ։ Տուն չէր գնում։ Իսկ երբ գիշեր եղավ, Ջեկոն գաղտագողի դուրս եկավ փողոց։ Գնում էր կորչեր։ Դռան առաջ զգաց գամփռների հոտը ու հանկարծ որոշեց գտնել նրանց։ Հետքն անցնում էր փողոցով։ Ջեկոն հետքը բռնեց ու գնաց։ Մտավ նախ մի փողոց, հետո՝ մի ուրիշը, մինչև դուրս եկավ գյուղից, ընկավ հանդամիջյան ճանապարհը։ Հոտը գալիս էր, հետքը՝ առաջնորդում։

Հոտն աստիճանաբար թանձրացավ, մի քողտիկի երևաց ու... լսվեց գամփռներից մեկի ձայնը.

— Ինչ-որ մեկը գալիս է։

Մյուսը բարձր հարցրեց.

— Ո՞վ ես։

— Ե՛ս եմ, Ջեկոն, հա՛, հա՛, — խեղճացած պատասխանեց Ջեկոն։

— Արի՛։

Գնաց։

Գամփռները նստել էին քողտիկի առաջ։

— Բարև։

— Բարև։

— Եկա։

— Տեսանք։

— Այստեղ ի՞նչ եք անում։

— Կոլտնտեսության բանջարանոցն ենք հսկում։

— Ումի՞ց։

— Գողերից։

— Իսկ ինձ ծեծեցին, հա՛, հա՛...

— Ինչո՞ւ։

— Միսը, շերեփը, հա՛, հա՛...

— Հա՜, — երկարացրին գամփռները, — հա՜, գողությո՞ւն ես արել։

Ջեկոն անձայն լալիս էր։

— Սովա՞ծ ես, — հարցրեց գամփռներից մեկը։

— Սոված եմ, հա՛, հա՛...

— Արի՛։

Ջեկոն գնաց գամփռի հետ։

Գամփռը ծառի տակ երկար փորեց, մի ոսկոր հանեց, հետո՝ մի ուրիշը...

— Կե՛ր։

Ջեկոն չէր ուզում ուտել. ոսկորները կեղտոտ էին, իսկ գամփռը քարի-քարի ժպտում էր։ Ջեկոն զզվանքով մոտեցավ, ատամները գցեց։ Վատ չէր։

— Իսկ հիմա, — ասաց գամփռը, — գնա նստիր ա՛յ էն ծառի տակ։ Հենց որ կասկածելի շարժում լինի, ձայն կտաս։

Ջեկոն տխուր գնաց։ Ամբողջ գիշեր ծառի տակ նստած հսկում էր…

* * *

Ջեկոն հիմա սիրում է երկու գամփռներին՝ Ասլանին ու Ղափլանին։ Ջեկոն ամեն գիշեր հսկում է նրանց հետ, նրանց հետ ուտում է մի ամանից։ Ասլանն ու Ղափլանը տաք են և փափուկ։ Տաք են մայրիկի նման ու ոչ թե ջեռուցման մարտկոցի, որ տաք է, իհարկե, բայց փափուկ չէ։

Ջեկոն հոգնում է։ Գիշերներն անքուն հսկելն այդքան էլ հեշտ բան չիմանար։ Հսկում է ու մեծանում։ Հիմա այլևս ոչ ոք չի փաղաքշում նրան, ոչ ոք չի ասում.

— Վո՜ւյ, ջանի՛կս, ի՜նչ սիրուն շնիկ է։

Շուրջը հոգնում են բոլորը։ Ոչ ոք ժամանակ չունի, նույնիսկ Արամը, որ արդեն դպրոց է գնում։ Բայց մարդիկ գիտեն ժպտալ։ Իսկ երբ մի գիշեր Ջեկոն հաչեց գողի վրա ու իմաց տվեց քնած մարդուն, մարդն իսկական, ամենաիսկական ձևով փաղաքշեց նրան ու ասաց.

— Կեցցե՛ս, Ջեկո, լավ շուն ես դառնում։

Ջեկոն հպարտացավ, բայց ոչ առաջվա նման…

# ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԱՆԾԱՆՈԹԸ

Ա. և Մ. ՊՐՈՎԵՆՍԵՆՆԵՐ

Առավոտյան ով որ ցախատանը կար, զարթնեց և «վա՜հ» արեց։

Ձին ասաց.

— Աստվա՛ծ իմ։

Խոզն ասաց.

— Օգնությո՛ւն։

Աքլորն ասաց.

— Այս ո՞վ է, այս ո՞վ է։

Իսկ սագերը պարզապես «ղա՛, ղա՛, ղա՛, ղա՛» արեցին։

Հավաքվել են բոլորը, կանգնել, աչքերը չռել և գուշակում են, թե ով է։ Իսկ ցախատան մեջտեղում կանգնել է խորհրդավոր անծանոթը, ինքը՝ կանաչ, անիվները՝ կարմիր, աչքերն՝ ապակյա։ Դա շատ հին մի մեքենա է, որի նմանը երեսուն տարուց ավել է, որ ոչ ոք չի տեսել։

Կովն ասաց.

— Մ-մ-միգուցե ցուլ է՝ ը՜մմմ…

Ձին խրխնջաց.

— Այդ որտե՞ղ ես կանաչ ցուլ տեսել, ի հո՛ հո՛ հո՛…

Սագերն ասացին.

— Երևի սագ է։

Նա կարծես թե ցախատուն մտնելիս «ղա՜-ղա՜» արեց։

Ոչխարն ասաց.

— Իսկ ես կարծում եմ, որ «բե՛-բե՜» արեց։

Այդ ժամանակ մոտեցավ բադը և ասաց.

— Ինչի՞ մասին է վեճը։ Դա ձուկ է։ Մեր մոտի լճակում այդպիսիները լիքն են, ողջ օրը փորփրում են հատակը։

Ոչ մեկը նրան չհավատաց, յուրաքանչյուրն իրենն էր պնդում։

Բադն ասաց.

— Ձեզ ասում եմ, որ սա ձուկ է։ Դուք մի րոպե լռեք, ես կապացուցեմ։

Բոլորը լռեցին։

— Կանա՞չ է, թե՞ ոչ, — ասաց բադը։

Ոչ մեկը չվիճեց. իսկապես որ կանաչ է։

— Ոտքեր ունի՞։

Ճիշտ է։ Նայեցին տեսան, որ ոտք չունի։

— Աչքերը ձկան են։ Ապակյա՞ են, թե՞ ոչ։

Նայում ես։ Իսկապես աչքերն ապակյա են և ինչպես ձկանը՝ չռված։

— Ահա՛ — ասում է բադը, — էլ ինչի՞ մասին է վեճը։ Ձուկ է և ուրիշ ոչինչ։

Ասաց և շատ ինքնագոհ գնաց իր գործերով զբաղվելու։

(Շարունակությունը 25-րդ էջում)

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Իտալացի գրող Ջաննի Ռոդարին մանուկների ամենասիրելի հեղինակներից մեկն է։ Ո՞վ չի կարդացել նրա հռչակավոր «Չիպոլինոյի արկածները», ինչպես նաև «Երկնագույն նետի ճանապարհորդությունը», «Անտեսանելի Տոնինոյի արկածները» գրքերը, նրա բազմաթիվ բանաստեղծություններն ու հեքիաթները։ Ռոդարին զարմանալիորեն լավ գիտի, թե երեխաներին ինչ է ամենից շատ հետաքրքրում, գիտի նրանց բնավորությունն ու ներաշխարհը, և հենց այդ է պատճառը, որ նրա ստեղծած հերոսները սիրելի են մանուկներին։

Վերջերս Ջաննի Ռոդարին մի նոր, շատ հետաքրքրական գիրք է գրել երեխաների համար։ Գրքի հերոսը, փոքրիկ Ջելսոմինոն է, որը ու անօգնական մի տղա, որը սակայն շատ ուժեղ ձայն ունի։ Ահա այդ ուժեղ ձայնի պատճառով էլ փոքրիկ Ջելսոմինոն բազմաթիվ արկածներ է ունենում։

Այս համարից սկսած մենք շարունակաբար կտպագրենք «Ջելսոմինոն խաբեբաների աշխարհում» գիրքը։

(ՀԵՔԻԱԹ)*

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

Այս պատմությունն ինձ արել է ինքը՝ Ջելսոմինոն։ Ճիշտ է, ես ականջներս բամբակ էի խցկել, բայց քիչ մնաց խլանայի։ Բանն այն է, որ Ջելսոմինոն շատ բարձր ձայն ունի և, նույնիսկ երբ կիսաձայն է խոսում, նրան լսում են անգամ ռեակտիվ ինքնաթիռների օդաչուները։ Իսկ հայտնի է, որ ռեակտիվ ինքնաթիռները ծովի մակերևույթից ու Ջելսոմինոյի գլխից տաս հազար մետր բարձր են թռչում։

Հիմա Ջելսոմինոն հռչակավոր տենոր է։ Նա հայտնի է ամեն տեղ, սկսած Հյուսիսային բևեռից մինչև Հարավայինը։ Երգիչ դառնալով նա իր համար ընտրեց ավելի հնչեղ ու պերճ անուն, որ ես ձեզ չեմ ասի, քանի որ դուք մի հարյուր անգամ կարդացած կլինեք թերթերում։ Երեխա ժամանակ նրան Ջելսոմինո, այսինքն Հասմիկ էին ասում, և այդ անունով էլ նա կմնա մեր պատմության մեջ։

Այսպես ուրեմն, կար-չկար, մի սովորական տղա կար։ Թերևս նրա հասակը մյուս տղաներից կարճ լիներ, բայց ձայնը զարմանալի ուժեղ էր։

Այդ բանը երևաց, երբ նա առաջին անգամ բերանը բացեց։

Երբ Ջելսոմինոն ծնվեց, իսկ այդ տեղի ունեցավ կես գիշերին, բոլոր համագյուղացիները տեղերից վեր թռան, կարծելով, թե գործարանի շչակի ձայն են լսում։ Բայց դա բոլորովին էլ շչակ չէր, այլ Ջելսոմինոն էր լալիս։ Նա, ինչպես անում են բոլոր նոր ծնված երեխաները, ուղղակի իր ձայնն էր փորձում։ Բարեբախտաբար նա շուտով սովորեց երեկոյից մինչև առավոտ քնել, ինչպես անում են բոլոր կարգին մարդիկ, բացի ժուռնալիստներից ու գիշերային պահակներից, իհարկե։ Հետո նա իր լացն սկսում էր ուղիղ առավոտյան ժամը 7-ին, հենց այն ժամանակ, երբ մարդկանց պետք էր լինում աշխատանքի գնալու համար արթնանալ։ Գործարանային շչակներն այլևս պետք չէին և շուտով անգործությունից ժանգոտվեցին։

Երբ լրացավ Ջելսոմինոյի վեց տարին, նա գնաց դպրոց։ Ներկա-բացակայի ժամանակ ուսուցիչը հասավ «Ջ» տառին և կարդաց նրա անունը.

— Ջելսոմի՛նո։

— Ներկա՛,—ուրախ պատասխանեց նոր աշակերտը։

Եվ հանկարծ մի դղրդյուն լսվեց։ Գրատախտակը* ջարդ ու փշուր եղավ և թափվեց ցած։

—Ո՞վ քարով խփեց գրատախտակին,—ձեռքը քանոնին պարզելով՝ խստորեն ասաց ուսուցիչը։

Բոլորը լուռ էին։

— Լավ, սկսենք ցուցակով,—ասաց ուսուցիչը։—Այդ դու՞ քար գցեցիր,—հերթով հարցնում էր նա ամեն մի աշակերտի։

— Ես չէի, ես չէի,—պատասխանում էին վախեցած տղաները։

* Տպագրվում է կրճատումներով։

* Արտասահմանյան շատ գրատախտակներ պատրաստված են սև քարի բարակ շերտից։

Երբ հերթը հասավ Ջելսոմինոյին, նա ևս վեր կացավ և պատասխանեց.

— Այդ ես չէի, պարոն ու... — բայց նա չհասցրեց արտասանել «ուսուցիչ» բառը. պատուհանի ապակիները ուժեղ զնգոցով թափվեցին հատակին։

Այս անգամ ուսուցիչն ուշադիր հետևում էր դասարանին և տեսավ, որ իր քառասուն աշակերտներից և ոչ մեկը պարսատիկով քար չի գցում։ «Երևի պատուհանը ջարդեցին փողոցից,— մտածեց ուսուցիչը,— երևի դա մեկնումեկն է այն տղաներից, որոնք դպրոց չեն գնում և թռչունների բներ են քանդում։ Սպասիր, կբռնեմ դրան և ականջից քարշ կտամ ոստիկանատուն»։



Այդ առավոտ սրանով էլ ամեն ինչ ավարտվեց։ Հաջորդ օրը ուսուցիչը նորից սկսեց ներկաբացական և նորից հասավ Ջելսոմինոյի անվանը։

— Այստեղ եմ,— պատասխանեց մեր հերոսը՝ հպարտ, որ դպրոցական է դարձել։

— Ծըըը՜խկ—շը՛խկ—շը՛խկ—շը՛խկ,— անմիջապես արձագանքեց պատուհանը։ Ընդամենը մի կես ժամ առաջ դրված ապակիները թափվեցին փողոց։

— Տարօրինակ բան է,— ասաց ուսուցիչը,— դժբախտությունը պատահում է այն ժամանակ, երբ ես հասնում եմ քո անվանը։ Հա՜...ամեն ինչ հասկանալի է. տղաս, դու չափազանց բարձր ձայն ունես։ Քո ձայնից օդը տատանվում է, ինչպես պտտահողմի ժամանակ։ Այսօրվանից դու միայն կիսաձայն կխոսես, թե չէ դպրոցն ու մեր ամբողջ գյուղը ավերակ կդառնա քո պատճառով։ Ուրեմն այսպես, պայմանավորվեցինք։

Ամոթից ու հուզմունքից կարմրելով, Ջելսոմինոն փորձեց առարկել։

— Սինյոր ուսուցիչ, ախր ես չէի...

— Ծըըը՜խկ, շը՜խկ, շը՜խկ... — պատասխանեց նրան նոր գրատախտակը, որը դպրոցի պահակն էր խանութից բերել։

— Ահա և քեզ ապացույց,— ասաց ուսուցիչը։

Սակայն նկատելով, որ Ջելսոմինոյի աչքերից արցունք է հոսում, ելավ տեղից, մոտեցավ տղային, քնքշորեն շոյեց նրա գլուխը։

— Ուշադի՛ր լսիր ինձ, տղա՛ս. քո ձայնը կարող է քեզ կա՛մ շատ դժբախտություն բերել, կա՛մ մեծ փառք։ Իսկ հիմա լավ կլինի, որ դու հնարավորին չափ քիչ օգտվես նրանից։ Բացի այդ, բոլորին հայտնի է, որ խոսքն արծաթ է, իսկ լռությունը՝ ոսկի։

Այդ օրվանից Ջելսոմինոյի համար դժոխային տանջանքներ սկսվեցին։ Որպեսզի նոր դժբախտությունների առիթ չտա, նա դասարանում բերանը պինդ փակում էր. թաշկինակով։ Չնայած դրան, նրա ձայնն այնքան բարձր էր հնչում, որ ընկերներն ստիպված մատներով փակում էին ականջները։ Ուսուցիչն աշխատում էր, ինչքան կարելի է, քիչ դաս հարցնել նրան։ Ճիշտ է, պետք ասել, Ջելսոմինոն օրինակելի աշակերտ էր հաշվվում, և ուսուցիչը վստահ էր, որ նա միշտ էլ կարող է ճիշտ պատասխան տալ։

Տանն, առաջին դեպքից հետո (նա սեղանի շուրջը նստած ժամանակ սկսեց պատմել դպրոցում պատահածի մասին, և նրանց տասներկու բաժակներն էլ փշուր-փշուր եղան) նրան խստիվ արգելել էին բերանը բաց անել։

Սիրտը հանգստացնելու համար նա ստիպված հեռանում էր գյուղից, գնում էր անտառ, լճի ափը կամ դաշտ։ Երբ նա համոզվում էր, որ մենակ է մնացել և բավական հեռու է իր համագյուղացիների պատուհաններից, պառկում էր հողին ու սկսում երգել։ Մի քանի րոպե հետո հողը սկսում էր եռալ. խլուրդները, թրթուրները, մրջյուններն ու մյուս գետնաբնակները դուրս էին գալիս հողի տակից և կիլոմետրերով հեռու փախչում, կարծելով, թե երկրաշարժ է սկսվում։

Միայն մի անգամ Ջելսոմինոն մոռացավ իր սովորական զգուշությունը։ Դա տեղի ունեցավ կիրակի օրը, ստադիոնում, ֆուտբոլի վճռական հանդիպման ժամանակ։

Ջելսոմինոն մոլի ցավաքաշ չէր, բայց կամացկամաց խաղը գրավեց նրան։ Եվ ահա ցավաքա-

ների խրախուսական բացականչություններից ոգևորված, նրանց գյուղի թիմն անցավ հարձակման։

(Ես չգիտեմ, թե ինչ է նշանակում «անցավ հարձակման», քանի որ ֆուտբոլից ոչինչ չեմ հասկանում, բայց այս արտահայտությունն իր պատմության մեջ օգտագործեց Ջելսոմինոն, և ես համոզված եմ, որ դուք կհասկանաք, չէ՞ որ սպորտային թերթեր դուք կարդում եք)։

— Տվե՜ք, տվե՜ք,— գոռում էին ցավաքաշները։

— Տվե՜ք,— ամբողջ ձայնով գոռաց Ջելսոմինոն։

Հենց այդ ժամանակ աջ հարձակվողը, փոխանցում էր կատարում դեպի կենտրոնական հարձակվողը, բայց գնդակը կես ճանապարհից ուղղությունը փոխեց և, ինչ-որ անհայտ ուժից թափ առնելով, դարբասապահի ոտների արանքով մտավ հակառակորդի դարբասը։

— Գո՜լ։

— Ա՛յ սա հարված էր,— լսվեց մեկի ձայնը,— տեսա՞ք, թե ինչպես գնդակը կտրեց. և ինչքա՜ն դիպուկ էր։ Ամեն ինչ միլիմետր առ միլիմետր չափված էր։ Ուղղակի ոսկի ոտներ ունի։

Բայց Ջելսոմինոն ուշքի գալով իսկույն ամեն ինչ հասկացավ։

«Կասկած չկա,— մտածեց նա,— այդ գոլը ես իմ ձայնով խփեցի։ Ստիպված պիտի լռեմ, թե չէ էլ ի՞նչ սպորտ։ Որպեսզի հաշիվը հավասարեցնեմ, ի՞նչ արած, ստիպված պիտի մի գոլ էլ մերոնց խփեմ»։

Երկրորդ խաղակեսին հարմար առիթ եղավ։ Հակառակորդի թիմը նետվեց հարձակման։

Ջելսոմինոն ճչաց, և գնդակը մտավ նրա համագյուղացիների դարբասը։ Պարզ է, որ այդ պահին նրա սրտից արյուն էր կաթում։ Նույնիսկ շատ տարիներ հետո, երբ ինձ այդ մասին պատմում էր, Ջելսոմինոն ասաց.

—Ես ավելի շուտ մատս կտրել կտայի, քան կխփեի այդ գոլը, բայց ի՞նչ կարող ես անել, ուզեի-չուզեի պետք է խփեի։

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

Մի անգամ Ջելսոմինոն գնաց իրենց այգին և տեսավ, որ բոլոր տանձերը հասել են։ Տանձերն, ախր, միշտ այդպես են. ոչ ոքի ոչինչ չեն ասում, բայց իրենց համար հասնում են ու հասնում, և մի գեղեցիկ օր էլ դուք տեսնում եք, որ նրանք արդեն հասել են և եկել է հավաքելու ժամանակը։

«Ափսոս, որ սանդուղք չեմ վերցրել հետս,— մտածեց Ջելսոմինոն։— Արի գնամ տնից սանդուղք բերեմ ու մի հատ էլ երկար ձող՝ վերևի ճյուղերից տանձը թափ տալու համար»։

Բայց այդ պահին նրա գլխում մի ուրիշ միտք ծագեց, ավելի ճիշտ, մի փոքրիկ համառություն. «Իսկ եթե օգտվեմ իմ ձայնի՞ց»։

Եվ, այսպես որոշելով, նա կանգնեց ծառի տակ ու ոչ կատակ ոչ լուրջ ճչաց.

— Է՜յ, տանձե՛ր, հապա մի ցա՜ծ թափվեք։

— Թը՜փ—թը՛փ— թըըը՜մփ,— պատասխանե-



ցին նրան տանձերը՝ անձրևի նման ցած թափվելով։

Ջելսոմինոն մոտեցավ մյուս ծառին և նույն բանը կրկնեց։ Ամեն անգամ, երբ նա գոռում էր՝ «Թափվե՜ք», տանձերը ճյուղերից այնպես էին պոկվում, կարծես հենց դրան էին սպասում։

Ջելսոմինոն շատ ուրախ էր դրա համար։

«Այսպես ես անագին ուժ կխնայեմ,— մտածում էր նա,— ափսոս, որ առաջ չէի մտածել այս մասին։

Այն ժամանակ, երբ Ջելսոմինոն շրջում էր իր այգում և այդ ձևով հավաքում տանձերը, նրան տեսավ մի գյուղացի, որը հարևան արտում բաղհան էր անում։ Նա տրորեց աչքերը, քիթը կամթեց

և, երբ համոզվեց, որ իր տեսածը երազ չէ, վազեց կնոջ մոտ.

— Գնա մի տես, թե ի՞նչ է կատարվում,— դողալով ասաց նա կնոջը,—ես համոզված եմ, որ Ջելսոմինոն չար վհուկ է։

Կինը նայեց թե չէ, ճչալով ծունկի իջավ.

— Ի՞նչ ես ասում, նա բարի, սուրբ ոգի է։

— Իսկ ես քեզ ասում եմ, որ վհուկ է։

— Իսկ ես ասում եմ սուրբ ոգի է։

Մինչ այդ, ամուսինները բավական խաղաղ էին ապրում, բայց այստեղ նրանք կպան իրար։ Ամուսինը վերցրել էր թագուչակը, կինը՝ բահը, և ամեն մեկն ուզում էր իր կարծիքը զենքով պաշտպանել, երբ ամուսնու գլխում մի միտք ծագեց.

— Արի հարևաններին կանչենք։ Թող նրանք էլ նայեն Ջելսոմինոյին, տեսնենք ի՞նչ կասեն։

Հարևաններին կանչելու միտքը դուր եկավ կնոջը։ Նա դեմ չէր մի ավելորդ անգամ շաղակրատելու հնարավորություն ստանալուն, դրա համար էլ մի ակնթարթում անհայտացավ։

Դեռ արևը մայր չէր մտել, երբ ամբողջ շրջանն իմացավ պատահածի մասին։ Բնակիչները բաժանվել էին երկու մասի։ Մի մասը պնդում էր, թե Ջելսոմինոն բարի ոգի է, իսկ մյուսներն ապացուցում էին, թե նա չար կախարդ է։

Ամենամոլեգին վիճաբանողները գնացին դեպի Ջելսոմինոյի այգին։ Մի մասն ուզում էր բարի ոգի Ջելսոմինոյի այգուց որևէ հիշատակ վերցնել, իսկ մյուսներն ուզում էին չար կախարդի այգին ոչնչացնել։



Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

Տեսնելով բազմությունը, Ջելսոմինոն կարծեց, թե հրդեհ է ընկել։ Նա արագ վերցրեց դույլը և, այն է՝ ուզում էր օգնության հասնել, երբ տեսավ, որ ամբոխը կանգ է առնում իր դռների մոտ։

— Ահա՛ նա, ահա՛ նա, բարի ոգի՞ն,—գոռում էին մի քանիսը։

— Նա ի՞նչ սուրբ է որ։ Նա իսկական չար կախարդ է։ Նայեք, նրա ձեռքին դույլ կա։ Երևի կախարդված դույլ է։

— Աստված կսիրեք, հեռու փախչենք, թե չէ, որ նա դույլի միջի բանը մեզ վրա է շփել, մենք կորած ենք։

— Էդ ի՞նչ բան է որ...

— Ի՞նչ է, կուրացե՞լ եք լրիվ։ Դույլի միջինը դժոխային ձյութ է։ Եթե դրանից ընկնի մարդու վրա, այնպես կվառի, որ ոչ մի բժիշկ այլևս բուժել չի կարողանա։

— Նա սուրբ է, սու՜րբ...

— Մենք տեսանք, Ջելսոմի՛նո, թե դու ինչպես էիր տանձերին հրամայում հասնել և նրանք հասնում էին, թե ինչպես էիր հրամայում ցած թափվել և նրանք թափվում էին։

— Դուք, ի՞նչ է, խելքներդ թռցրե՞լ եք,— հարցրեց նա,— այդ ամենի պատճառն իմ ձայնն է։ Ուղղակի իմ ձայնից օդն ուժեղ սկսում է ցրնցվել, ինչպես փոթորկի ժամանակ։ ·

— Հա՛, հա՛, մենք գիտենք,— բղավեց մի կին,— դու հրաշքներ գործում ես քո ձայնով։

— Ի՞նչ հրաշքներ։ Դա կախարդա՜նք է,— գոռում էին մյուսները։

Զայրացած Ջելսոմինոն դույլը ցած գցեց, գնաց տուն ու դուռը ներսից փակեց։

«Իմ հանգիստ կյանքը վերջացավ,— մտածեց նա։— Հիմի արդեն ոչ մի քայլ չեմ կարող կատարել առանց այդ հետաքրքրասերների։ Երեկոները, քնելուց առաջ, ամեն տեղ պիտի իմ մասին խոսեն։ Ես պիտի փոքրիկ երեխաների համար բոբո կամ չար կախարդ դառնամ։ Ավելի լավ կլինի ես այստեղից փասափուսես քաշեմ ու գնամ։ Եվ ի՞նչ ունեմ այստեղ անելու։ Ծնողներս մեռել են, ամենալավ ընկերներս զոհվել են պատերազմում։ Ավելի լավ է գնամ աշխարհ ման գամ և բախտս փորձե

իմ ծայրով: Դուցե և երջանկության ծնունդ ըն-թեր: Չէ՞ որ կան մարդիկ, որոնք երգելու համար փող են ստանում: Դա, իհարկե, մի քիչ տարօրինակ է: Մեր ինչո՞ւ պիտի մարդկանց վճարեն մի բանի համար, որն հենց իրենց հաճույք է պատճառում: Ինչևէ, երգելու համար վճարում են: Դուցե ինձ էլ հաջողվի երգիչ դառնալ»:

Երբ մտքում այս բանը որոշեց, նա հավաքեց իր ունեցած-չունեցածն ու, լցնելով մախաղը, դուրս եկավ փողոց:

Նրան պատող մարդիկ բղավելով ճանապարհ տվին տղային: Ոչ ոքի չնայելով, Ջելսոմինոն ճանապարհ ընկավ: Բավական հեռու գնալով, նա շուռ եկավ, որպեսզի մի վերջին անգամ նայի իր տա-նը:

«Արժե դրանց գլխին մի խաղ խաղալ» — մը-տածեց Ջելսոմինոն և ամբողջ կրծքով մեկ օդը ներս քաշելով, գոռաց.

— Ցտեսությո՜ւն...

Հրաժեշտի արդյունքն անմիջապես երևաց: Տղամարդիկ զգացին, թե ինչպես քամու անտեսա-նելի հոսանքը գլխարկները թռցրեց: Մի քանի պառավ աղջիկներ, որոնց գլուխները հանկարծ մերկացան այնպես, կարծես բոլորովին մազ չէին ունեցել, նետվեցին իրենց կեղծամների հետևից:

— Ինչ քամի՜, ինչ քամի՜, — կրկնում էր Ջելսոմինոն, ամբողջ հոգով ծիծաղելով կյան-քում առաջին անգամ կատարած իր չարության վրա:

Գլխարկներն ու կեղծամները չվող թռչուն-ների երամի նման սավառնեցին դեպի ամպերը և աչքից կորան: Շուտով հայտնի դարձավ, որ նը-րանք մի քանի կիլոմետր հեռու էին ընկել, իսկ շատերն էլ հասել էին արտասահման:

Մի քանի օր հետո Ջելսոմինոն էլ սահմանն անցավ և ընկավ մի շատ տարօրինակ երկիր:

(Շարունակելի)




ՍՈՎԻՆԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ

1918 թվականի ամռանը մենք ամառանոց էինք գնացել հայ-րենի ջրերը՝ Խանտուկի: Այդ տարին այդտեղ էին հանգստա-նում շատ հայ ընտանիքներ, որոնց թվում հիշում եմ բանտա-տեղծ Հովհաննես Հովհաննիսյանի ընտանիքը: Հանգստա-ցողների մեջ էր նաև ճարտա-րապետ Կարո Հալաբյանը: Նա այն ժամանակ հազիվ 20—22 տարեկան երիտասարդ էր:

Մի օր էլ քաղաքի զբոսայգում ես և քույրս զբոսնում էինք, հանկարծ հանդիպեցինք երա-ժըշտության ուսուցիչ Վարդան Բունիին: Նա մեզ կանչեց մի կողմ և հայտնեց, որ մտադիր է հանգստացող հայերի ուժերով բեմադրել «Անուշ» օպերան: Մեր ոգևորությանը չափ ու սահման չկար: Հաջորդ օրը հավաքվե-ցինք նշանակված վայրը, որ-տեղ կային շատ աղջիկներ և տղաներ: Որքա՜ն մեծ եղավ մեր ուրախությունը, երբ իմացանք, որ Սարոյի դերը պետք է կատա-րեր Կարո Հալաբյանը, իսկ Մոսիի դերը՝ Վարդան Սամվել-յանը: Ես և քույրս մասնակցում էինք երգչախմբում: Սկսվեցին փորձերը: Կարո Հալաբյանը ար-տիստի մեծ ընդունակություն-ներ ուներ և շատ հաճելի, հյու-թեղ ձայն:

Փորձերը մոտենում էին իրենց ավարտին: Ահա եկավ նաև այն-քան սպասելի օրը: Մենք բոլորս շատ հուզված, ժամանակից բա-վական շուտ, հավաքվել էինք թատրոնի շենքում: Այդ օրը մեր առաջին ներկայացումն էր: Ըս-կըզբում շատ էինք վախենում, որ հանդիսականներ չլինեն, բայց շուտով ի ուրախություն մեզ, կամաց-կամաց դահլիճը լցվեց:

Ամեն ինչ հարթ և լավ էր ընթանում, բայց պատահեց մի դեպք, որը մեզ շատ հուզեց: Ահա Կարո Հալաբյանը երգեց «Բարձր սարեր» երգը, որից հե-տո պետք է լսվեր Մոսիի կրա-կոցը: Բայց ի սարսափ բոլորի, հրացանը ինչ-որ փչացել էր և ոչ մի կերպ չէր կրակում: Մո-սի-Սամվելյանը կարմրած, քըր-տինքի մեջ կորած չգիտեր ինչ անի: Առանց այդ կրակոցի ներ-կայացումը կփչանար: Կարո Հալաբյանը հասկանալով ամեն ինչ, անմիջապես բղավեց.

— Վարդա՛ն, խանչալո՛վ խփիր:

Այդ խոսքերից Մոսին ուշքի եկավ և զարմանալի արագու-թյամբ թռավ Սարոյի մոտ, գե-տին գցեց նրան և կողքից կախ-ված խանչալով «սպանեց»:

Ամեն ինչ բարեհաջող վերջա-ցավ, բայց եթե չլիներ Կարո Հա-լաբյանի հնարամտությունը, ներկայացումը կտապալվեր:

Մի քանի օր հետո մեր խումբը մեծ հաջողությամբ հանդես ե-կավ նաև Կիսլովոդսկում: Բայց այս անգամ, նախքան բեմ մըտ-նելը, Կարո Հալաբյանը մի քա-նի անգամ ուշադիր ստուգեց հրացանը:

# ԽԱՅՏԱՆՔ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

Տայգան մթնեց։

— Անձրև է գալու և երկար կտևի,— ասաց Տատոն, պետք է պատսպարվել։

Ափ հանեցինք լաստը, կապեցինք ծառից, ինքներս ուղևորվեցինք դեպի որսորդական տնակը։ Տնակը դատարկ էր։ Երբ քնելու համար խոտ հավաքեցինք, խոմենկոն խարույկը վառեց, Տատոն տեղավորվեց դռան մոտ, պառկեց։ Պառկեցինք նաև մենք։ Տատոն վառեց ծխամորճը և սկսեց հեքիաթ պատմել. նա այդպիսի սովորություն ուներ, քնելուց առաջ միշտ պատմում էր։

Տատոն իր բոլոր պատմած հեքիաթներում ինքն էր մասնակցում. նա պատմում էր առաջին դեմքով, պատմում էր այնպես, կարծես այդ բոլորը պատահել էր իր հետ և անժխտելի իրականություն էր։ Եթե մենք հավատում էինք նրան՝ նա ուրախանում էր և հանգիստ քուն էր մտնում, իսկ եթե չէինք հավատում՝ մռայլում էր դեմքը. «Դուք ոչինչ չեք հասկանում»— ասում էր նա մեզ այնպես, կարծես խղճում էր մեզ մեր տգիտության համար։ Տատոն մի սովորություն էլ ուներ. նա երբեք նույն հեքիաթը երկրորդ անգամ չէր պատմում, պատմում էր միայն մեկ անգամ և՛ ահա մենք պառկած լսում էինք, իսկ նա պառկած պատմում էր։

—Գարուն էր եկել, տայգա դուրս եկա։ Բացատներից մեկում երկու ճերմակ կաքավ տեսա,— սկսեց նա,— շրջում էին ձյունից ազատ տեղերում, կտցահարում դեռ չբացված բողբոջները, լսում սառույցի վրա քչքչացող ջրերի ձայնը և ուրախանում, որ գարուն է եկել։ Ես նայում էի նրանց ու ամեն ինչ զգում, հասկանում էի։ Գարնան այդ պահն ամենալավ ժամանակն է տայգայում։ Ցուրտը կոտրվում, արևը ձգտում է դեպի զենիթ, մոծակներ չկան, և հայտնվում են առաջին գունատ, դալուկ ծաղիկները։ Առաջին անգամ ձյունածածկ լեռներից տաք քամի է փչում, առաջին անգամ կոտրվում է բարակած սառույցի եզրը և փլվում ջրի մեջ։ Երկար, տանջալի ձմռան օրերից հետո, կաքավներն առաջին անգամ են կղկղացնում այնպես, որ կարծես բողբոջն է պայթում, ջուրը գլգլում, գարունը սառցի հետ զնգում, ղողանջում է սրտիդ մեջ։ Գարուն էր եկել։ Կաքավները մանր ավազ էին կտցահարում։ Ես կանգնեցի մի մեծ կեչու տակ, որ ինձ չտեսնեն, չվախենան։

Ես զգուշությամբ իջեցրի հրացանս։ Հանկարծ մանկական մի ճիչ ցնցեց ինձ։ Ես դուրս թռա ծառի հետևից և ինչ տեսնեմ. երկու փոքրիկ աղջիկներ, բարձր ծիծաղելով փախչում են ինձնից, իսկ կաքավները թռան, հեռացան։ Այդ օրվանից հետո ես այլևս այդ բացատը չեկա մինչև ուշ աշուն։

Ձմեռնամուտին, որսի առաջին օրերը, ես հիշեցի զույգ կաքավների բացատը և որոշեցի անցնել այնտեղով։ Բարակ, թարմ սառույց էր կապել գետն իր ափերին։ Քայլում էի սառցի վրայով, որը ապակու նման ջարդվում, փշրվում էր ոտքերիս տակ։ Ինձ դուր էր գալիս այդ խշխշոցը։ Օդը թեթև էր, սառը, մոծակներ չկային։ Քայլում էի այն արահետով, որտեղ անհետացել էին փոքրիկ աղջիկները։ Շուրջս լուռ էր, օրը պարզ էր ու լուսավոր։ Ինձնից ձախ, մանր մամռաթմբերի միջև, Մյասնիջա գետակի ափին մի յուրտ երևաց։ «Աղջիկների յուրտն է»— անցավ մտքովս, և քայլեցի



դեպի նա։ Յուրտը սովորական յուրտ էր, ինչպես բոլոր յուրտերը։ Երբ ես մոտեցա, այնտեղից դուրս վազեց մի փոքրիկ աղջիկ։

— Բարև՛, փոքրիկս,— ողջունեցի ես։

— Բարև՛, քեռի որսորդ,— պատասխանեց աղջիկը և ինձ ներս հրավիրեց:

Ես մտա յուրտը, այնտեղ ոչ ոք չկար:

— Ու՞ր են գնացել,— հարցրի հին ծանոթի ընդման:

— Գնացել են Խատկանի գերեզմանը,— ասաց աղջիկն ու երեսը շուռ տվեց ինձնից: Ես լուռ



նայում էի լացից ցնցվող աղջկա ուսերին: Երբ նա հանգստացավ, ասաց.

— Դուք չգիտեի՞ք Խատկանին:

— Ո՛չ,— ասացի:

— Խատկանը մահացավ, երբ դեռ ջրերը չէին սառել,— ասաց աղջիկը:

— Երկի՞ծ ժանր հիվանդացա՞վ:

Ես նստեցի, վառեցի ծխամորճս: Փոքրիկն իմ առաջ մի բաժակ չիֆիր* դրեց:

— Խնդրեմ, չիֆիր խմեք:

*Թունդ թեյ

— Իսկ ի՞նչ էր պատահել Խատկանին, նրան վիրավորե՞լ էին:

— Ո՛չ, նրան չէին վիրավորել:

— Իսկ ինչո՞ւ մեռավ:

— Որսորդն էր մեղավոր: Այն որսորդը, որ ուզում էր կրակել զույգ կաքավների վրա: Նա շատ սոսկալի մարդ էր: Մենք շատ վախեցանք նրանից: Նա կանգնել էր ծառի հետևը, բարձրահասակ, սև դեմքով մարդ էր: Երբ մենք ճչացինք, որ կաքավները թռչեն, նա դևի նման ծիծաղում էր: Մենք հազիվ տուն ընկանք, հազիվ փախանք նրանից: Եթե նրան տեսնեիք, քեռի որսորդ, դուք էլ կվախենայիք նրանից:

— Իսկ հետո՞, հետո ի՞նչ եղավ,— հարցրի ես անհամբեր:

— Հետո շատ տարօրինակ բան պատահեց: Գիշերը Խատկանին արթնացրել էր մի մեղմ սվսվոց: Նա դուրս էր եկել քնապարկից և տեսել իր առջև կանգնած զույգ կաքավներին: Կաքավներից մեկն ասել էր. «Կգաս, Խատկան, կգաս մեր բացատը, երբ լուսինը երկրորդ անգամ մեծանա ու դուրս գա Մորժոտ սարի աջ ուսից: Մենք քեզ կսպասենք, Խատկան»: Երբ լուսինը երկրորդ անգամ մեծացավ, դուրս եկավ Մորժոտ սարի աջ ուսից, Խատկանը գնաց զույգ կաքավների բացատը:

— Ե՜կ, մոտեցի՛ր, Խատկա՛ն, եկ այստե՜ղ,— կանչել էր նրան մայր կաքավը: Խատկանը մոտեցել էր:— Նայիր մեր ընտերին, ուզո՞ւմ ես, մեկին քեզ նվիրենք: Դու փրկեցիր մեզ չար որսորդի գնդակից: Վերցրո՛ւ, Խատկա՛ն, ես ամեն օր կգամ, կկերակրեմ նրան, քանի դեռ փոքր է: Ես ուրիշ ոչինչ չունեմ, որ քեզ նվիրեմ, վերցրո՛ւ, Խատկա՛ն, դու բարի և լավ աղջիկ ես, իմ ճուտը քեզ մոտ երջանիկ կլինի:

Եվ Խատկանը վերցրեց նրա ձուերից ամենագեղեցիկին ու տուն բերեց: Այդ ժամանակ դեռ ջրերը չէին սառել: Մենք հապալասի պտուղներ էինք հավաքում փոքրիկի համար, իսկ մայրն ամեն օր գալիս կերակրում էր նրան, սիրում, փայփայում ու գնում էր էլի իր բացատը: Բայց ահա սառեցին փոքրիկ վտակները, սփռաբույսերը պառկեցին մամռաթմբերի վրա, հապալասի պտուղներն ընկան սառած գետնին:

— Ձմեռ է գալիս, ի՞նչ անենք, Խատկան,— հարցրի ես նրան,— պահե՞նք փոքրիկին, թե՞ բաց թողնենք գնա:

— Պահենք,— ասաց Խատկանը,— թող մնա, երբ կուզի՝ բաց կթողնենք կգնա։

Այդպես էլ արեցինք։ Մի երեկո, երբ պատրաստվում էինք քնապարկը մտնել, շատ ուրախացանք մեր փոքրիկով, շատ սիրեցինք նրան։ Խատկանը ձեռքի ափում հապալասի պտուղներ էր բռնել, փոքրիկը թափահարում էր թևերը, թռչում Խատկանի ուսերին, նստում թևի վրա, կտցահարում փակ բուռը և հապալասի պտուղներ ուզում։ Հետո գործի էր դնում կոշտ ճանկերը, փարվում, կղկղում։ Ուրախությունից խելքը կորցրած Խատկանը բուռը չէր բացում, պտուղներ չէր տալիս, ընկնում էր գետին, թավալ տալիս և ծիծաղում էր, սաստիկ ծիծաղում և այնպես էր նետվում անկյունից-անկյուն, որ մենք արդեն վախենում էինք։

— Բավակա՛ն է, Խատկան,— ասում էր մայրս,— բավակա՛ն է, որդիս։

Նա չէր լսում։ Եվ ահա, հանկարծ Խատկանը լռեց, բացվեց նրա բուռը և հապալասի հատիկները թափվեցին։ Ես տեսա նրա աչքերը, որքան սարսափ և տագնապ կար նրանց մեջ։ Նա մեկ էլ վեր թռավ տեղից ու խայթվածի պես ճչաց... Այն ժամանակ միայն մենք տեսանք ճխլված փոքրիկին։ Խատկանն անզգուշաբար ընկել էր փոքրիկ կաքավի վրա և ճխլել իր ծանրության տակ։

Առավոտյան եկավ մայր կաքավը, որ կերակրի։ Մայրս հանեց փոքրիկի դիակը, դրեց վրանի առաջ։ Մայր կաքավն արտասվեց։

— Իսկ հետո՞, հետո ի՞նչ եղավ,— հարցրի ես Խատկանի քրոջը, որ լռել էր արդեն։

— Հետո Խատկանին տարանք զույգ կաքավների բացատը և թաղեցինք այն ծառի տակ, որի մոտ մենք տեսել էինք չար որսորդին։

Ես բարձրացա տեղիցս, կիսատ թողեցի չիֆիրը։

— Հիմա կգան, որսո՛րդ քեռի, քի՛չ էլ սպասեք,— ասաց Խատկանի քույրը,— հիմա բոլորը կգան։

Ես սպասել չէի կարող, ինձ վատ էի զգում։

— Մենք գրքերում էինք կարդացել, որ թռչուններին կարելի է թաղել։

— Ինչպե՞ս թե թռչուններին։ Դու ասացիր, որ Խատկանի գերեզմանն են գնացել։

— Այո՛, քեռի որսորդ, մենք փոքրիկ կաքավին Խատկան էինք կանչում, քույրիկիս անունով։ Հիմա նա էլ կգա։

Տատոն լռեց։ Տայգան բոլորովին մթնել էր։ Հեռվում որոտում էին ամպերը, բայց անձրևը դեռ չէր սկսվել։

— Անձրևը կգա և երկար կտևի,— ասաց Տատոն,— քնել է պետք։

(Սկիզբը 17-րդ էջում)

Բայց բոլորը դժգոհ էին։

— Եթե սա ձուկ է,— ասաց ձին,— ինչո՞ւ չի լողում։

— Եթե սա ձուկ է,— ասաց խոզը,— ինչո՞ւ է ցամաքի վրա։

— Ոչ մի ձուկ էլ չի՛,— որոշեցին սագերը,— նրանից իսկի ձկան հոտ չի գալիս։

Ճաշից հետո մի տղա մտավ ցախատուն։ Մեքենան չխչխկաց, դխդխկաց և աղմկեց։ Վիճողները ցրվեցին դեսուդեն։ Վախեցան։

Մեքենան դուրս եկավ ցախատնից։ Երևում էր, որ վարորդն անփորձ է. քշեց ուղիղ լճակը և կանգ առավ։ Վարորդը մի կերպ դուրս եկավ և վազեց տուն չորանալու։

Վիճողները նորից հավաքվեցին։ Կանգնել, վիճում են, թե ով է ամենից շատ վախեցել։

Տեղնուտեղը բադն եկավ։

— Դե ի՞նչ,— ասաց նա,— հիմա համոզվեցի՞ք, հասկացա՞ք, որ ձուկ է։

Հովն ասաց.

— Ճիշտ է, բադիկ։ Ջրումն է, ուրեմն ձուկ է։ Խոզն ասաց.

— Ոչինչ չեմ կարող ասել։ Լավ է լողում։ Աքլորն էլ համաձայնեց.

— Ճիշտ է, ձուկ է։ Եվ, հավանաբար՝ կձան։ Լավ է, որ մեր ցախատնից դուրս լողաց։

— Դա իսկապես լավ է,— ասացին բոլորը և գնացին ընթրելու։

Իսկ լճակում բոլոր մեծ ու փոքր ձկները հավաքվեցին մեքենայի շուրջը ու գուշակում են, թե դա ինչ է։

Ռուսերենից թարգմ. Ա. ԹՈՓՉՅԱՆ



Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ



# Գրքերի աշխարհում

## ԾՈՎԻ ԲԱՐԵԿԱՄԸ

Մոտ 150 տարի առաջ Ղրիմի հարավ-արևելյան ծովափին ծվարած փոքրիկ Թեոդոսիա քաղաքում բնակություն էր հաստատել մի հայ ընտանիք: Փոքրիկ մի տղա կար ընտանիքում՝ Հովհաննես անունով, որին մայրը փաղաքշաբար Օնիկ էր անվանում: Ժիր ու հետաքրքրասեր էր Հովհաննեսը: Սիրում էր ժամերով թափառել քաղաքի շուկայում, լսել ծեր երաժիշտների նվագը, զրուցել ծովափին հավաքված ձկնորսների հետ, մագլցել մերձակա ժայռերը: Բայց ամենից ավելի փոքրիկ տղան տարված էր ծովով. նստում էր ափին ու երկա՜ր-երկա՜ր դիտում ալեկոծությունը, քաղաքին մոտեցող նավերը, հիանում էր երեկոյան ջրերի մեջ արտացոլվող լուսնի արծաթյա փայլով:




Ու մի օր էլ, երբ նա դարձյալ դիտում էր ծովը, անդիմադրելի ցանկություն եկավ՝ նկարել, նկարել ալիքները, նավահանգստին մոտեցող նավը: Եվ մի կտոր փայտածուխն ու մոտակա տան ճերմակ պատը դարձան նկարչական նրա առաջին պարագաները: Այդ օրվանից հետո այլևս ոչինչ չէր կանգնեցրել տղային: Նա նկարում էր ամեն տեղ. հոր սնդուկից հանված գրքերի էջերին, հարևանների հենց նոր սպիտակեցրած տան պատերին: Հայրը հազիվ էր կարողանում հոգալ ընտանիքի ապրուստը, և փոքրիկ Հովհաննեսը աշխատանքի ընդունվեց մի սրճարանում: Օրնիբուն վազվըզում էր նա, սուրճ մատուցում, լցնում հաճախորդների ծխամորճները և շատ հաճախ էլ նրանց պահանջով ջութակ էր նվագում: Նա այնքան լավ էր նըվագում, որ մի անգամ հեռուներից եկած հունական նավի նավապետը նըրան նվիրեց մի ընտիր ջութակ: Հովհաննեսը սիրում էր երգն ու նվագը, բայց երբեք չէր մոռանում նկարչությունը:

Անցան տարիներ: Իր արտակարգ ընդունակությունների ու աշխատասիրության շնորհիվ պատանին տասնըվեց տարեկան հասակում դարձավ Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիայի սան: Քսան տարեկան էր նա, որ իր հիանալի նկարների համար պարգևատրվեց ոսկե մեդալով և շուտով մեկնեց արտասահման՝ կատարելագործելու իր արվեստը: Արտասահմանից նա վերադարձավ արդեն որպես հռչակավոր նկարիչ, ու թեև դեռ շատ երիտասարդ էր, ընդամենը 27 տարեկան, բայց նրան ակադեմիկոսի կոչում շնորհեցին:

Վեց հազարից ավելի կտավներ ըստեղծեց անխոնջ նկարիչը: Այսօր էլ նրա հիանալի կտավները թարմ են ու խոսուն, այսօր էլ նրա կյանքն ու ստեղծագործությունը գրավում են բոլոր արվեստասերներին, նրա մասին գրվում են գրքեր և ուսումնասիրություններ: Գրող Լև Վագները նույնպես մի գիրք է գրել՝ «Պատմություն նկարիչ Այվազովսկու մասին», որը վերջերս ռուսերենից թարգմանվել և լույս է ընծայվել Հայպետհրատի կողմից: Կարդացեք այդ գիրքը և դուք շատ երջանիկ ու հուզումնալից պահեր կապրեք մեծ ծովանկարչի հետ միասին:

Վ. ԵՐԿԱՆՅԱՆ

## ՀԱՆԴՈՒԳՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ

*1946 թվականի գարնանը Պանամայի ջրանցքից օվկիանոս դուրս եկավ մի փոքրիկ նավ: Այնտեղ կար ընդամենը մեկ մարդ: Նրա անունն էր Ջոն Կոլդուել: Նա որոշել էր մենակ կտրել անցնել Խաղաղ օվկիանոսը և հասնել Ավստրալիա: Ու «Հեթանոս» փոքրիկ լաստալով Ջոն Կոլդուելը օվկիանոսային անծայրածիր հարթություններով հազարավոր կիլոմետրեր անցավ և ենթարկվեց շատ փորձությունների. սարսափելի փոթորիկ ու անտանելի սով, մենամարտ՝ հզոր ալիքների ու շնաձկների հետ, նավից ցած ընկնել, նավաբեկություն՝ արևադարձային կղզու մոտ...*




*«Հեթանոսին» վիճակված չէր անցնել Խաղաղ օվկիանոսը. լաստան ջարդվեց Ֆիջի արշիպելագի մոտ: Հանդուգն ծովագնացին վերցրին կղզիաբնակները, և նա ընկավ մի կտոր ցամաքի վրա: Ջոն Կոլդուելը հոգու երախտագիտությամբ, ջերմ ու սրտագին կերպով է պատմում կղզու թխամորթ մարդկանց մասին:*

*Ճանապարհորդությունն ավարտելուց հետո նա գրեց այս գիրքը, որը կարդացվում է լարված հետաքրքրությամբ:*

## ԱՆՆԱ ՖՐԱՆԿԻ ՕՐԱԳԻՐԸ




...Սա փառաբանված գրողի վեպ չէ, սա տասներեքամյա մի աղջկա օրագիր է, բայց ընթերցողին ավելի շատ է հուզում, քան վարպետորեն գրված գրքերը։

Բոլորին հայտնի է, որ հիտլերականները սպանեցին վեց միլիոն հրեաների՝ հարուստների ու աղքատների, հայտնի ու անհայտ մարդկանց, որոնք քսան տարբեր պետությունների քաղաքացիներ էին... Հրեաները փորձում էին խուսափել, թաքնվել փոսերում, լքված հանքահորերում, քաղաքների խուլ անկյուններում. օրերով, ամիսներով, տարիներով նրանք սպասում էին դատաստանի... Վեց միլիոնի փոխարեն խոսում է մի ձայն՝ ո՛չ իմաստունի և ո՛չ էլ պոետի՝ սովորական մի աղջկա ձայն։

Աննա Ֆրանկը օրագիր է պահել, ինչպես դա հաճախ անում են նրա հասակի աղջիկները. իր ծննդյան օրը նա մի հաստ տետր է նվեր ստացել և սկսել է գրի առնել մանկական կյանքի իրադարձությունները։ Բայց մանկական այդ կյանքը մեծերի կամքով արագորեն դառնում է ոչ մանկական։ Մանկահասակ աղջկա օրագիրը դառնում է իմաստալից մի փաստաթուղթ և մեղադրական ակտ....

Վեց միլիոնից մի ձայն է հասել մեզ։ Այդ դեռ մանկական ձայն է, բայց մեծ ուժ կա այդ ձայնի մեջ՝ անկեղծություն, մարդկայնություն, ինչպես նաև տաղանդ։ Ամեն գրող չէր կարող այդպես նկարագրել «ապաստարանի» բնակիչներին և իր ապրումները, ինչպես դա հաջողվել է փոքրիկ Աննային։

ԻԼՅԱ ԷՐԵՆԲՈՒՐԳ

## ՊԵԴՐՈ ՊՈՆԻՆ

Աշունն արդեն իր ոսկեգույն տերևների գորգերով ծածկել էր ճանապարհները։ Հաճարենու պուրակը պայծառացել էր։ Տերևները թափվում էին։




Այդ օրը առավոտյան ախոռում կերակրատաշտակի մաքուր հատակին երկու մետաղադրամ գտնվեց՝ մեկ և տասը պֆենիգ։ Երկու մետաղադրամի վրա էլ ձիու ատամների հետքեր էին երևում։ Հաջորդ օրը կրկնվեց նույնը և այդպես շարունակվեց մի քանի օր։ Պեդրոն փող էր թքում...

Բայց այդ չարաճճի ձիուկը կարողանում էր նաև ֆուտբոլ խաղալ. հարևան այգուց խնձորներ գողանալ, կարուսել պտտեցնել և մարդկանց ուրիշ շատ անակնկալների բերել։

Գերմանացի ժամանակակից հայտնի գրող Էրվին Շտրիտմատերի այս գիրքը, որն արժանացել է Ազգային մրցանակի, հետաքրքիր նկարագրություններ է տալիս նաև տարվա եղանակների փոփոխման, դաշտերի, անտառների, փոքրիկ գազանների ու թռչունների մասին։



Հայպետհրատը տասը հատորով լույս է ընծայում Ժյուլ Վեռնի երկերը։ Պատանի ընթերցող, քո անձնական գրադարանը հարստացրու մեծ գրողի ստեղծագործություններով, որոնք աչքիդ առաջ բաց են անում բազմաթիվ խորհրդավոր գաղտնիքներ։





**Բաժինը վարում է
պրոֆ. ԳԻՏՕՒՆՅԱՆԸ**

# ՎԵՆԵՏԻԿ

Իտալիայում մի քաղաք կա, որը ո՛չ փողոց ունի և ո՛չ էլ հրապարակ: Այնտեղ դուք ավտոմեքենայի ձայն չեք լսի, չեք տեսնի սլացող տրամվայներ: Փողոցների փոխարեն այդ քաղաքը 400 կամուրջ ունի և 160 ջրանցք, որոնց մեջ արտացոլվում են շքեղ շենքերն ու Ադրիատիկ ծովի կապույտ երկինքը: Ջրանցքներով վեր ու վար են անում գեղեցիկ գոնդոլները:

Այդ քաղաքը Վենետիկն է, որը տեղավորված է 118 կղզու վրա: Մայր ցամաքի հետ Վենետիկը կապվում է երկու մեծ կամուրջով և մի ավտոճանապարհով:

Վենետիկ քաղաքը հիմնադրել են ձկնորսները հարյուրամյակներ առաջ: Հինգերորդ և վեցերորդ դարերում հոների արշավանքները առափնյա բնակիչներից շատերին ստիպեցին տեղափոխվել կղզիներ: Այդ ժամանակ Վենետիկը Բյուզանդիայի տիրապետության տակ էր գտնըվում, բայց գրեթե լրիվ անկախ էր: 697 թվականից սկսած, ամբողջ իշխանությունն անցավ ցմահ ընտրվող դոժին:

Վենետիկը հաճախակի պատերազմներ էր մղում, որի հետեվանքով նա մեկուսացրեց իր ախոյանին՝ Ճենովային և բազմաթիվ կղզիներ ու քաղաքներ գրավեց: Վենետիկի նավատորմը լողում էր քիչ թե շատ հայտնի գրեթե բոլոր ծովային ճանապարհներով: Վենետիկցիները առևտուր էին անում Ռուսաստանի, Բյուզանդիայի, Բուլղարիայի, Սիրիայի, Եգիպտոսի, Հայաստանի, Հնդկաստանի և ամբողջ Եվրոպայի հետ:

Հին ժամանակներում Վենետիկում հաճախակի ճոխ հանդեսներ էին կազմակերպվում: Այդ հանդեսները սկիզբ առան դեռևս Բուչենտորե դոժի ժամանակ: Բուչենտորեն մի անգամ բազմաթիվ նավակների ուղեկցությամբ մեկնեց դեպի Լիդո կղզին, ուր չտեսնված տոնահանդես կազմակերպեց: Դրանից հետո ամեն տարի զվարճացող մարդկանցով լեփ-լեցուն նավակներ ուղեկցում են դոժին:

Վենետիկում ավելի շատ է գիրք տպագրվել, քան ամբողջ Իտալիայում: Դեռևս 16-րդ դարում Վենետիկում մի շարք հրատարակչություններ կային, որոնք հարյուրավոր գրքեր էին տպագրում:

Տասնհինգերորդ դարի երկրորդ կեսին Վենետիկի հզորությունն սկսում է թուլանալ: Սկսվում են վենետիկո-թուրքական պատերազմները, և քաղաքը կորցնում է գրեթե իր բոլոր տիրապետությունները: Իսկ 1492 թվականին, երբ հայտնաբերվում է Ամերիկան ու վեց տարի հետո՝ Հնդկաստանի ծովային ճանապարհը, առևտրական ուղիները Միջերկրական ծովից փոխադըրվում են Ատլանտյան և Հնդկական օվկիանոսները: Դա Վենետիկին մեծ հարված է հասցնում, և նա կորցնում է ծովային ու առևտրական տերության իր հեղինակությունը: Վենետիկյան արիստոկրատիան սկսում է հովանավորել գիտությունն ու արվեստները:

Վենետիկը գեղանկարչության խոշորագույն վարպետների հայրենիքն է, այն գիգանտների, որոնք արվեստի գանձարանը հարստացրին աշխարհահռչակ



«Հառաչանքի կամուրջ»



գործերով: Նրանք բոլորն էլ վենետիկյան գեղանկարչություն կոչվող ուղղության ներկայացուցիչներն էին:

Վենետիկի շենքերը, կամուրջներն ու ջրանցքները իրենց նրբագեղությամբ պարտական են շինարար վարպետներին, քանդակագործներին, ճարտարապետներին ու նկարիչներին:

Վենետիկի ամենասքանչելի շինության՝ Սուրբ Մարկոսի տաճարի շինարարությունն սկսվեց դեռևս տասերորդ դարում: Տաճարը իրենից մի շատ հետաքրքիր ճարտարապետական հուշարձան է ներկայացնում, որը կառուցվել է վենետիկյան բնորոշ ոճով:

Իրենց ճարտարապետությամբ հայտնի են Դոժերի պալատը և Մեծ ջրանցքի վրայի Կա դը Օրո, Ֆոսկարի, Լորեդան դե Տեչխի, Պիզանի, Բարբարո պալատները:

Ամենից շատ ճարտարապետական հուշարձաններ կառուցվել են Վենետիկի ծաղկման և հզորացման շրջանում, որոնք աչքի են ընկնում յուրօրինակ գեղեցկությամբ: Գունավոր մարմարը, խճանկարները, շենքերի ոսկեզօծված ճակատները, բարձրաքանդակներն ու արձանները ջրանցքների մեջ արտացոլվելով, մի հեքիաթային աշխարհ են հիշեցնում:

Հատկապես սքանչելի է Ռիալտոյի կամուրջը, որը կառուցվել է Վերածնունդին բնորոշ ոճով, 16-րդ դարում: Քիչ նշանավոր չէ նաև «Հառաչանքի կամուրջը»:

Վենետիկի եկեղեցիներում ու պալատներում, գեղարվեստի ակադեմիայում, քաղաքային թատրոնում կարելի է տեսնել վենետիկյան դպրոցի նկարիչների նշանավոր գործերը:

Իր գեղեցկությամբ Վենետիկը միշտ էլ գրավել է արվեստի ու գիտության մարդկանց, ինչպիսիք են՝ Գալիլեյը, Ջորդանո Բրունոն, Բայրոնը, գերմանացի կոմպոզիտոր Վագները: Բայրոնն իր «Դոն Ժուանը» գրել է Վենետիկում և Սուրբ Ղազար կղզում հայերեն է սովորել:

Այս կղզին այնքան փոքր է, որ քարտեզների վրա չի նշվում. գտնվում է Վենետիկից դեպի հարավ: Մինչև 12-րդ դարի վերջերը հայտնի չի եղել նույնիսկ նրա անունը: Ս. Ղազար է կոչվել այնտեղ շինված հին եկեղեցու անունով: 1717 թվականի աշնանը Վենետիկի ծերակույտը այդ կղզին ընդմիշտ նվիրեց մի խումբ հայ միաբանների, որովհետև Վենետիկում եղած նրանց վանքն ու եկեղեցին քարուքանդ էին արել թուրքերը: Այդ ժամանակ կղզում կար մի այգեպան, մի պարտեզ և երկու ջրհոր: Միաբանությունը Մխիթար Սեբաստացու ղեկավարությամբ, Ս. Ղազար կղզում կառուցում է նոր վանք ու եկեղեցի, հիմնում է տպարան և կրոնական գրքերից բացի, սկսում է հրատարակել բազմաթիվ լեզվաբանական, պատմական, աշխարհագրական աշխատություններ, բառարաններ, թարգմանություններ: Կարճ ժամանակից հետո այդ փոքրիկ կղզու հուշակը տարածվում է ամենուր:

Ճանապարհորդները, գրողներն ու գիտնականները երկար տա-



Բարտոլոմեո Կոլեոնիի հուշարձանը

թածություն էին կտրում, որ այցելեն Ս. Ղազար, տեսնեն հայ միաբաններին: Շատերն այլևս չէին տալիս կղզու իսկական անունը, այլ ուղղակի ասում էին՝ Հայոց կղզի: Եվ շատ գրքերում այդպես էլ հիշատակվում է:

Հեռանալով Վենետիկից մարդ իր հետ տանում է այնպիսի հիշողություններ, որոնք մնում են ամբողջ կյանքում: Դա մեծ ու փառապանծ պատմության մի քաղաք-թանգարան է, մարդկության լավագույն ձգտումների ու պայքարի մի հոյակապ վկա:

Ավելի քան 1400 տարի կանգնած լինելով Ադրիականի ջրերի վրա, Վենետիկն այսօր էլ առաջվա նման ուրախ է ու տխուր, գեղեցիկ ու առեղծվածային:




*...Հարավային Աֆրիկայի տափաստաններում աճում է ամենազարմանալի ծաղկավոր բույսերից մեկը: Վելվիչիա միրաբիլիս կոչվող այդ փոքրիկ ծառածաղիկը շաղգամանման արմատ ունի և երկու հսկայական կաշենման տերև՝ մեկ մետր երկարությամբ և 50 սմ լայնությամբ: Վելվիչիա միրաբիլիսի տերևները չեն փոխվում, դրանք ապրում են ավելի քան հարյուր տարի:*

*...Հայաստանում մշակվում են ցորենի գոյություն ունեցող հիմնական բոլոր տեսակները. ավելի քան 230 տարատեսակ, որը կազմում է աշխարհում եղած տեսակների մեկ երրորդից ավելին:*

*...Աֆրիկայի հարավում ապրում է հետաքրքիր մի թռչուն, որին «մեղր ցույց տվող» են ասում:*

*Երբ կկուն վայրի մեղուների բույն է գտնում, անմիջապես գնում է մարդ որոնելու: Նա առաջին պատահած մարդուն ձայնով հասկացնում է, որ հետևի իրեն: Մարդուն մեղուների բնի մոտ տանելուց հետո, կկուն նստում է քիչ հեռու և անհամբեր սպասում, մինչև փեթակն ազատվի հյութալի մեղրից: Հետո նա հաճույքով ուտում է մեղրահացի փշրանքները և մեղուների թրթուրները: Այդ թռչունի մաշկն այնքան հաստ է, որ նրան պաշտպանում է մեղուների խայթերից:*

*...Թռչունների թռիչքի ամենամեծ բարձրությունը հասնում է 7 հազար մետրի, անվայրէջք թռիչքի հեռավորությունը՝ 7 հազար կիլոմետրի, իսկ արագությունը՝ ժամում 100 կիլոմետրի:*

*...Թռչող էակների թվին է պատկանում հողագնդի վրա ապրող բոլոր կենդանիների 60 տոկոսը: Եթե չհաշվենք ծովերի և օվկիանոսների բնակիչներին, ապա այս կամ այն չափով թռիչքի ընդունակ կենդանիները կազմում են ցամաքի բնակիչների 3/4-ը:*

## ՄԻ-ԼՈՒ ԵՂՋԵՐՈՒՆ

Արտասովոր ու գեղեցիկ է Չինաստանի կենդանական աշխարհը: Այդտեղ ապրում են այնպիսի կենդանիների առանձին տեսակներ, որոնք անհայտացել են մյուս երկրներից:

Ծանոթանանք դրանցից մեկի՝ եղջերու մի-լուի հետ: Կաթնասունների դասին պատկանող այս խոշոր կենդանին եվրոպացիներին հայտնի է դարձել 19-րդ դարի կեսերին: Առաջին եվրոպացին, որը տեսել է այս արտասովոր կենդանուն, եղել է ճանապարհորդ Արման Դավիդը: 1865 թվականին, երբ նա գտնվում էր Պեկինում, լսում է, որ կայսերական այգում պահում են «սուրբ» կենդանիներ: Այդ լուրը հետաքրքրում է բնասեր ճանապարհորդին: Սակայն այգին շրջապատված էր 72 *կմ* երկարությամբ բարձր պատերով, իսկ դարպասի մոտ կանգնած էին զինված պահակներ, որոնք թույլ չէին տալիս ներս մտնել: Արման Դավիդը գաղտնի մագլցում է պատը և իջնում այգի: Այդտեղ նա շատ տարօրինակ կենդանիներ է տեսնում: Ինչպես հետո Արման Դավիդը իմանում է, այդ կենդանիներին տեղացիները անվանում էին «ցե-պու-չիանգ», այսինքն՝ «նման չէ չորսից ոչ մեկին»: Եվ իրոք, այդ կենդանիներն ունեին եղջերուի եղջյուրներ, կովի պոչ, ձիու բաշ և այծի կճղակներ:

Շուտով Արման Դավիդը այդ լուրը հասցնում է Եվրոպա: Ֆրանսիական գիտնականների խնդրանքով չինական մինիստր Խեն-Չին երեք կենդանի նվիրում է Ֆրանսիային: Բայց կենդանիները չկարողանալով տանել երկար ճանապարհի դժվարությունները, տեղ չհասած՝ սատկում են: Դրանց մաշկն ու կմախքը հասցվում է Ֆրանսիա, նշանավոր բնագետ Ալֆոնս Միլն-Էդուարդը երկար ուսումնասիրությունից հետո գտնում է, որ դա նոր կենդանատեսակ է, և ի պատիվ Արմանի, այն անվանում է «Դավիդի եղջերու»:

Հետաքրքրական է, որ մի-լուն իր եղջյուրները փոխում է ոչ թե տարեկան մեկ անգամ, ինչպես սովորաբար լինում է, այլ՝ երկու անգամ: Այն ժամանակ այս կենդանուց ուրիշ ոչ մի երկրում չկար, բացի Չինաստանից:

1895 թվականին դժբախտություն պատահեց. հեղեղը քանդեց կայսերական այգու պատը և ավերեց ողջ այգին: Մի-լուների մեծ մասը խեղդվեց, իսկ մնացածը 1900 թվականին բոքսյորական շարժման ժամանակ իսպառ ոչնչացվեց: Նրանցից միայն մեկը ինչ-որ հրաշքով փրկվեց: Սակայն Եվրոպայի կենդանաբանական այգիներում գտնվող մի-լուներից մի քանիսը վերադարձվեց Չինաստան և նորից հիմք դրվեց նրանց բազմացմանը: Այժմ աշխարհում հաշվվում է մոտ երկու հարյուր հիսուն գլուխ մի-լու, որոնց մեծ մասն ապրում է Անգլիայում, Բետֆորդի արգելոցում:

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ԾԱՂԻԿ

Վիկտորիա ռեգիան աշխարհի ամենագեղեցիկ ու ամենաանուշաբույր ծաղիկներից մեկն է: Հայտնաբերել է անգլիացի ճանապարհորդ-բուսաբան Ռիչարդ Շոմբուրգը 1837 թվականին և, ի պատիվ Անգլիայի Վիկտորիա թագուհու, անվանել են հավերժահարս Վիկտորիա: Իսկ իր այժմյան անունը՝ Վիկտորիա ռեգիա (թագավորական Վիկտորիա) ստացել է ավելի ուշ:

Նոր բացված ժամանակ այս ծաղիկն ունենում է սպիտակ գույն, աստիճանաբար միջին մասը ստանում է բաց վարդագույն երանգ: Առավոտյան ծաղիկը փակվում է, երեկոյան նորից բացվում և ունենում է վառ կարմիր գույն, որը հետո դառնում է ծիրանագույն: Ծաղիկը շատ մեծ է, ունի մինչև 40 սմ տրամագիծ: Երկրորդ օրն առավոտյան Վիկտորիա ռեգիայի ծաղիկն իջնում է ջրի տակ և առաջացնում պտուղ: Սեխի մեծություն ունեցող պտուղներն ունեն ալյուրով լի շատ սերմեր, որ կարելի է ուտել: Այդ պատճառով էլ Ամերիկայում ապրող իսպանացիները Վիկտորիա ռեգիային ասում են ջրային եգիպտացորեն: Ինչպես ցողունը, այնպես էլ հաստ բաժակաթերթերը ծածկված են սուր փշերով: Վառ կանաչ գույն ունեցող տերևի լայնությունը հասնում է մինչև 2 մետրի: Տերևի հակառակ երեսը բաց մանուշակագույն է կամ կարմրավուն, ծածկված ջղերի խիտ ցանցով: Շնորհիվ ջղերի միջև եղած օդի, տերևը ջրի երեսին կարող է պահել 35-50 կիլոգրամ ծանրություն:



Այժմ Մոսկվայի, Լենինգրադի, Սուխումիի, Ղրիմի բուսաբանական այգիներում աճեցնում են ավելի փոքրատերև ու փոքր ծաղիկներով վիկտորիաներ: Վիկտորիա ռեգիայի ծաղկելու մասին հաճախ թերթերում նախօրոք լինում են հայտարարություններ:

## ՔԱՐԱՑԱԾ ԱՆՏԱՌ

*Աշխարհի հրաշալիքներից մեկն է ԱՄՆ-ի Արիզոնայի նահանգում գտնվող քարացած անտառը: Ժամանակի ընթացքում այս անտառի ծառերը վերածվել են կայծքարի ու թանկագին քարի և գտնվում են 6—10 մ հաստություն ունեցող հրաբխային հողի մեջ: Քարացած ծառերի բները համարյա թե պառկած են գետնին և ունեն մինչև 3 մետր տրամագիծ: Դրանք արտաքինից հղկված են ու թափանցիկ: Դրանց վրա առկայծում են բազմերանգ ճառագայթներ, առավելապես ակնհայտ են դեղին և կարմիր գույները, որոնք ստեղծում են մի գրավիչ բնական տեսարան: Քարացած անտառի ստեղծման պատճառը հետևյալն է. հրաբխային ուժեղ գործունեությունից հետո ծառերը արմատախիլ են եղել և, ջուր ժայթքող հեղուկի մեջ թաղվելով, վեր են ածվել կայծքարի: Ամերիկացի երկրաբանները գտել են, որ այս անտառից հանված կայծքարը և ագատը ավելի արժեքավոր են, քան սովորական կայծքարերը: Երկրագնդի զանազան վայրերում կան առանձին քարացած ծառեր, բայց մի ամբողջ անտառ, ծառերի այդպիսի առատությամբ, երկրաբանական բազմազանությամբ և գեղեցկությամբ, եզակի է ամբողջ աշխարհում:*

## ՓՈՔՐԻԿ ՃԱՊՈՆԱՑԻՆԵՐԸ ՓՐԿՎԵՑԻՆ

Երևի ձեր ծնողներից լսած կլինեք, թե երեք-չորս տասնյակ տարի առաջ ինչքան երեխաներ են մահացել բնական ծաղկից, քութեշից, կարմրուկից, մենինգիտից:

Հիմա այդ հիվանդությունների դեմ հիանալի միջոցներ կան: Բավական է մարդ իր կյանքում մեկ կամ երկու անգամ սրսկվի, որպեսզի իրեն ապահով զգա: Բայց կա մանկական մի հիվանդություն, որի դեմ պայքարելը մինչև վերջին տարիներն էլ շատ դժվար էր: Այդ հիվանդությունը կոչվում է մանկական պոլիոմիելիտ կամ ինչպես անվանում են՝ ձեռքերի և ոտքերի կաթված: Հիվանդի ձեռքերն ու ոտքերը այնպես են թուլանում, որ նա չի կարողանում այլևս ո՛չ գրել, ո՛չ կարգին քայլել:

Ամենից մեծ վնասը պոլիոմիելիտը հասցրել է Ամերիկայում և Անգլիայում:

Վերջին տարիներս պոլիոմիելիտ հիվանդության դեմ մեծ ուսումնասիրություններ կատարեցին սովետական բժիշկները և ստացան նրանից պաշտպանվելու միջոցը. այդ նյութը կոչվեց հակապոլիոմիելիտի վակցինա:

Դեռ նոր էր կատարվել այդ մեծ հայտնագործությունը, երբ ամբողջ աշխարհով մեկ տարածվեց մի սոսկալի լուր. պոլիոմիելիտ հիվանդությունը ներս է խուժել Ճապոնիա և պատուհասում է նրանց մանուկներին:

Եվ ահա այն ժամանակ, երբ ամերիկացի կապիտալիստները իրենց ինքնաթիռներով և նավերով զենք էին տեղափոխում Ճապոնիա, սովետականն մի նավ Ճապոնիա տարավ պոլիոմիելիտ հիվանդության դեմ պայքարող վակցինան:

Ճապոնացի երեխաները փրկվեցին:




Տարբեր մոդելներ և ավտոմատ սարքեր պատրաստելու համար անհրաժեշտ է ունենալ էլեկտրամագնիսական ռելե:

Նպատակահարմար է օգտագործել փոքրագաբարիտ PCM — 1, PCM — 2 և PCM — 3 տիպի ռելեները: Այս երեք ռելեներն էլ միատեսակ կառուցվածք ունեն, միմյանցից տարբերվում են նրանով, որ աշխատելիս PCM — 1 տիպի ռելեի երկու զույգ կոնտակտները միանում են, իսկ PCM — 3 տիպինը՝ անջատվում: PCM — 2 տիպի ռելեն իր մեջ զուգակցում է թե՛ մեկի և թե՛ մյուսի առանձնահատկությունները: Նրա մի զույգ կոնտակտները կանոնավոր միացած են, իսկ երկրորդ զույգը՝ կանոնավոր անջատված:




Բայց այդպիսի ռելեները գնել միշտ չի հաջողվում, ուստի կարելի է պատրաստել սեփական ձեռքերով: Դրա համար պետք է ունենալ էբոնիտե շերտիկ, մի կտոր լավ այրած փափուկ մետաղ, հին հեռախոսային ռելեի չորս կոնտակտային զսպանակ, 5 մմ տրամաչափի պտուտակ՝ երկու պնդօղակով և լաքամեկուսացված 0,12 մմ փաթույթային հաղորդալար:

Կմախքը պատրաստվում է 1,5 մմ հաստություն ունեցող երկաթից: Տափակ նրբախարտոցով երկար կողմում խարտոցել 3 մմ խորությամբ փորակ, որի մեջ կդրվի խարիսխը: Փորակի կողքերին թողեք 2 միլիմետրանոց բեղիկներ: Դրանք չեն թողնի, որ խարիսխը շարժվի: Անկյունակի մյուս՝ կարճ կողմի կենտրոնում 5 մմ տրամագծով անցք բացեք: Ռելեի հավաքման ժամանակ այդտեղով կանցնի միջուկը:

Խարիսխի շերտիկը կտրեք լավ այրած փափուկ երկաթից և լայնությամբ ծալեք ուղիղ անկյան տակ: Երկար կողմի կողքերը 2 մմ նեղացրեք, իսկ ծայրը կլորացրեք: Պատրաստի խարիսխը դրեք կըմախքի փորակի մեջ և ստուգեցեք, որ հանգիստ ճոճվի: Եթե շփումը ուժեղ է, խարիսխը մի քիչ խարտոցեք, բայց զգույշ, որպեսզի մեծ արանք չստացվի և խարիսխը կմախքից չընկնի:

Որպես էլեկտրամագնիսական կոճի միջուկ կարող է ծառայել կլոր կամ վեցանկյուն գլխով պըտուտակը (կոնաձև գլխով պտուտակը չի լինի): Պտուտակը ամրացրեք սեղանի մամլակի վրա, ֆաների երկու կտորի միջև, որպեսզի ակոսիկները չփչանան, և գլուխը խարտոցեք այնքան, մինչև հաստությունը դառնա 1 — 5 մմ: Այնուհետև երկու շերտ 15 մմ լայնությամբ սոսնձած սպիտակ թուղթ փաթաթեք:

Այսպիսով դուք կստանաք կոճի պարկուճը, որը փաթույթային հաղորդալարի մեկուսիչը կպահպանի վնասվելուց:

Կոճի թշիկները, 11 մմ արտաքին տրամագծով, կտրեք բարակ, բայց խիտ ստվարաթղթից, թշիկների կենտրոնում պարկուճի տրամագծի չափով անցքեր բացեք: Այնուհետև կոճին սոսինձ քսեք և թո-

ղեք չորանա. եթե թշիկները իրար նկատմամբ զուգահեռ են՝ հավաքեք:

Կոճի փաթաթելը արագ և հարմար է կատարել ձեռքի գայլիկոնիչի միջոցով: Գայլիկո՞նը անշարժ ամրացրեք մամլակի վրա. իսկ կապիչում (պատրոն) ամրացրեք կոճից դուրս եկած միջուկի ծայրը: Աշխատեք հաղորդալարը փաթաթել մի քիչ ձգված և խիտ գալարներով, մինչև ամբողջ կոճը լցվի: Փաթույթը. մեխանիկական վնասվածքներից պաշտպանելու համար, փաթաթեք մեկուսիչ ժապավենով, իսկ ժապավենի ծալքերի միջև տեղադրեք փաթույթի ծայրերը. զոդելով դրանց ճկուն հաղորդալար:

Որպես հիմք, որի վրա հավաքվում է ռելեն, ծառայում է էբոնիտե շերտը: Նրա վրա էլեկտրամագնիսի միջուկի համար գայլիկոնով անցք բացեք և նրբասղոցով սղոցեք 4 կտրվածք՝ կմախքի կողմից և 2 կտրվածք՝ կոճի առջևում: Կմախքի հետևի կտրվածքներում զույգերով տեղադրեք հեռախոսային ռելեից կտրած կոնտակտային զսպանակները, իսկ կոճի առջևի կտրվածքներում հենց այդ կոնտակտային զսպանակների կլայեկած մասերը, որ սովորաբար ծառայում են ռելեն շղթային միացնելու համար: Որպեսզի կոնտակտային զսպանակները կտրվածքներում ամուր լինեն և չշարժվեն, դրանք սոսնձապատեք: Ապա տեղակայեք կմախքի հիմքի վրա և նրա անցքի մեջ անցկացրեք կոճի միջուկը: Հիմքի հակառակ կողմից միջուկին ամրացրեք երկու պնդօղակ: Երկրորդ պնդօղակով դուք կկարողանաք ռելեն ամրացնել մոդելի կամ սարքավորման տախտակին: Խարիսխը դրեք կմախքի բեղիկների միջև և, որպեսզի դուրս չթռչի, մետաղալարով ամրացրեք կմախքին: Մի կտոր մետաղալարի ծայրը կեռեք, ինչպես որ ցույց է տրված նկարում, և դնելով զույգ կոնտակտային զսպանակների միջև արված կտրվածքում, դիմացկունության համար մի երկու կաթիլ սոսինձ կաթեցրեք:

Օրգանական ապակուց նրբասղոցով սղոցեք երկու բութակ և սոսինձով կպցրեք խարիսխի այն կողմին, որն աշխատելիս հեռանում է կմախքից: Բութակները կճնշեն իրենց մոտ գտնվող զսպանակներին. սրանք կթեքվեն, և իրար դիմաց գտնվող զսպանակները կմիանան միմյանց:

Այժմ մնում է էլեկտրամագնիսական կոճի փաթույթի ծայրերը զոդել կլայեկած շերտիկներին: Եվ ռելեն պատրաստ է:

# ՊԱՏՎԱՍՏ

Յուրաքանչյուր դպրոցական պետք է տիրապետի պատվաստի տեխնիկային, քանի որ դա նախ շատ հետաքրքիր աշխատանք է և, որ ամենակարևորն է, պատվաստի միջոցով կարելի է ազնվացնել պտղատու և անտառային վայրի ծառերն ու թփերը, ցանկացած համով ու հոտով պտուղ ստանալ ու բարձրացնել բերքատվությունը:

Պատվաստաբույսի արմատային մասը կոչվում է պատվաստակալ, իսկ վերին մասը՝ պատվաստացու:

Պատվաստակալն աճեցնում են սերմից կամ կորիզից, իսկ պատվաստացուն վերցնում են առողջ, լավ զարգացած հատուկ մայր ծառից: Պատվաստում են նաև ծառերը, ուղղակի տեղում:

Պատվաստը պետք է կատարել գարնանը, երբ բույսերի մեջ հյութաշարժ է սկսվում, և ամռանը՝ ճյուղերի գալար մասերով:

Աչքապատվաստը մեծ մասամբ կատարում են ամռան և աշնան ամիսներին, երբ ընձյուղները բավականաչափ փայտանում են և նոր բողբոջներ են զարգանում: Սենյակային բույսերից կիտրոնը կարելի է տարվա բոլոր օրերին պատվաստել:

Պատվաստի բազմաթիվ ձևեր կան, որոնք բաժանվում են չորս հիմնական խմբի:

1. **Պատվաստ իրար կպցնելու միջոցով:** Այս դեպքում երկու տարբեր ճյուղեր միացնում են միմյանց, առանց մայր բույսերից անջատելու: Ընտրում են իրար շատ մոտ աճող ծառերի մեկական ճյուղ և սրանց վրա կեղևը հավասար հատվածներով հանում ու հարթում են այնպես, որ այդ հարթած մասերը իրար ծածկեն: Այնուհետև այդ միացած մասը ամուր կապում են ու պահում մինչև համաճելը: Կպչելուց հետո ճյուղերից մեկն



անջատում են մայր բույսից, իսկ մյուսի ծայրը հեռացնում։

**2. Պատվաստ՝ երկու և ավելի աչքեր ունեցող կտրոնով։** Այս դեպքում պատվաստակալի և պատվաստացուի վրա սուր դանակով թեք կտրվածք են անում այնպես, որ այդ կտրվածքներն իրար ծածկեն ու կեղևը կեղևի վրա ընկնի։ Հետո միակցված տեղը ամուր կապում են և պահում մինչև լրիվ համաճելը (Նկ. 1 ա)։ Հաճախ հինգ և ավելի տարեկան բնի կամ ճյուղի վրա պատվաստում են միամյա ճյուղը։ Այս դեպքում բունը կամ ճյուղը հարկավոր բարձրության վրա սղոցում են, հարթեցնում, դանակով ճեղքում ու մեջտեղը սեպ դնում։ Այնուհետև կտրոնի ստորին մասը ևս սեպաձև կտրում են, ուսեր սարքում և թամբաձև նստեցնում ճեղքի մեջ այնպես, որ կտրոնի կեղևն ընկնի պատվաստակալի կեղևի վրա։ Հետո երբ սեպերը հանում են, ճեղքվածքի կեսերն իրար են սեղմվում և իրենց մեջ ամուր պահում կտրոնները։ Կտրոնները ճեղքի մեջ ամրացնելուց հետո նրանց արանքում բացվածքի վրա կեղևի կտոր են դնում, մածիկ քսում ու ամուր կապում (Նկ. 1 բ)։

Պատվաստը կատարում են նաև կեղևի տակ։ Այս դեպքում կտրոնի ստորին սրած մասը տեղավորում են պատվաստակալի կեղևի և բնափայտի միջև ու ամուր կապում (Նկ. 1 գ)։

**3. Պատվաստ՝ արմատի վրա։** Այս դեպքում ցողունային կտրոնը պատվաստում են ուղղակի արմատի վրա։ Մեծ ծառի տակը փորում են այնքան, որ արմատի գլխավոր ճյուղերը բացվեն, ապա այդ ճյուղերից 3—4-ը դանակով հարթեցնում են և վրան միամյա կամ երկամյա ճյուղի կտրոն պատվաստում, ճիշտ այնպես, ինչպես ցողունի վրա էր արվում։ Պատվաստն ավարտելուց հետո փոսը մինչև կտրոնի ծայրը հողով ծածկում են և տեղը չկորցնելու համար նշան անում։

Պատվաստել կարելի է նաև ինչպես ցողունային, այնպես էլ արմատային կտրոնները։

**4. Աչքապատվաստ։** Վերցնում են հատուկ մայր ծառերի լավ զարգացած միամյա առողջ




*Խնձորենու միամյա շիվ. ձախից՝ սովորական վիճակում, աջից՝ նախապատրաստված աչքապատվաստի համար։*

*1. Հատման ուղղությունը աչքը կտրելու ժամանակ (նշված է կետագծով), աջից՝ վահանիկը աչքով։ 2. Կեղևի կտրվածքը պատվաստակալի վրա։ 3. Կեղևի տակ մտցված վահանիկը։ 4. Պատվաստի կապը։*

բողբոջը, կեղևի, երբեմն նաև բնափայտի փոքր կտրոնով և տեղավորում պատվաստակալի կեղևի տակ, T ձևի կտրվածքում, ապա կեղևի հատվածի ծայրերը մոտեցնում են, սեղմում ու կապում (Նկ. 2)։

*Ա. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ*

# ԲԱՄԲՈՒԿ

*Բամբուկը Հայաստանի համար նոր կուլտուրա է։ Այդ արժեքավոր մշտադալար բույսը մեծ չափով տարածված է արևադարձային և մերձարևադարձային երկրներում։*

*Բամբուկը չափազանց արագ է աճում. մեկ ու կես ամսվա ընթացքում հասնում է մինչև 25 մետր բարձրության։ Բամբուկի ցողունը բաղկացած է առանձին գլանաձև, սնամեջ միջհանգույցներից. տերևները նեղ են, նշտարաձև։ Մեզ մոտ աճող տեսակները ծաղկում են չափազանց հազվադեպ՝ 60—70 տարին մեկ անգամ։ Բնափայտը շատ ամուր է, թեթև, գեղեցիկ, հարթ և ոսկեգույն։ Բամբուկից պատրաստում են դահուկային հենափայտեր, ցատկաձողեր, կարթակոթեր, անային կահկարասիներ և այլն։*

*Բամբուկի բազմացման համար վերցվում են երկու տարեկան տընկիներ, թողնելով դրանց վրա 2—3 ճյուղ՝ իրենց տերևներով։ Տնկինները պետք է հանել 20—30 սմ տրամագիծ ունեցող հողագնդով, ապա թրջել ու փաթաթել հնամաշ շորով կամ խոտով, որպեսզի հողը չթափվի։*

*Բամբուկը պետք է տնկել մարտին կամ ապրիլի սկզբներին, ավազակավային պարարտ հողում և առատորեն ջրել։ Լավ խնամքի դեպքում բամբուկն աճում է շատ արագ, տալիս է նոր ցողուններ։ Երրորդ տարվանից մշակության կարիք համարյա չի զգացվում, անհրաժեշտ է միայն պարարտացնել և հեռացնել թույլ աճած ցողունները։ Չորրորդ տարում կարելի է արդեն կտրել հասունացած ցողունները։ Կտրում են սուր սղոցով, ձմռան ամիսներին, երբ բնափայտն ավելի ամուր է լինում։*

*Տնկիներ կարելի է ստանալ Իջևանի շրջանի Ուզունթալայի պետական տնկարանից։*

*Լ. ԷՆՖԻԱՋՅԱՆ*



# «Մակարենկո»

Վեց ամիս շարունակ հայրը փնտրում էր տղային։ Տասնչորսամյա Վասյան, որ ընկել էր վատ շրջապատ ու թողել դպրոցը, անհետ կորել էր։ Հայրը տակնուվրա արեց ամբողջ Մելիտոպոլը, եղավ նաև ուրիշ քաղաքներում, բայց իզուր...

Եվ ահա լուր ստացվեց, որ Վասյան ողջ և առողջ գտնվում է Խարկովի Ձերժինսկու անվան կոմունայում, այնտեղ, ուր դաստիարակվում են անապաստան ու իրավազանց երեխաները։ Հայրը շտապեց Խարկով և ուղիղ գնաց կոմունայի պետի մոտ։

Կոմունայի պետը, որ միջին տարիքի տղամարդ էր, ակնոցի տակից զննող հայացքով նայեց խոսակցին ու հանգիստ ասաց.

— Այո՛, տղադ այստեղ է,— և դիմելով օրվա հերթապահին, ավելացրեց. — Կանչեցե՛ք Վասյային։

Քիչ մնաց հայրը չճանաչեր որդուն։ Պատառոտված շորերով, կեղտոտ, ականջների վրա թափված բիզ-բիզ մազերով Վասյայի փոխարեն, նա տեսավ գեղեցիկ համազգեստով, չափված շարժուձևերով մի կանոնավոր տղայի, որը հարկն ու կարգով ներս մտնել, կանգնել ու նայել գիտե։

— Անտոն Սեմյոնովիչ, դուք ինձ կանչե՞լ եք, — զգաստ կանգնելով դրան մոտ՝ հարցրեց Վասյան։

— Այո՛, հայրդ է եկել։

Տղան նոր միայն նկատեց անկյունի աթոռին նստած հորը։ Հայր ու որդի միմյանց գիրկ ընկան։ Երկուսի աչքերում էլ արցունքի կաթիլներ երևացին։ Երբ հանգստացան, հայրը դիմեց պետին, որ թույլ տա որդուն տուն տանել։

— Խնդրեմ, — պատասխանեց պետը, — որդիդ է որոշում։ եթե ուզում է՝ թող գա։

— Ո՛չ, չե՛մ գնա այստեղից, — վճռական պատասխանեց Վասյան։

Եվ իզուր անցան հոր սպառնալիքն ու խնդրանքը։



Վասյան տուն վերադարձավ շատ տարիներ հետո միայն, երբ կոմունայից ուղիղ գնաց բարձրագույն դպրոց և ավարտեց այն որպես ինժեներ։

Վասյա Ստոլյարովի նման քանի՜-քանի՜ իրավազանց կամ անապաստան երեխաներ դաստիարակվեցին Ձերժինսկու անվան կոմունայում, որի ղեկավարն էր մեծ մանկավարժ Անտոն Սեմյոնովիչ Մակարենկոն։

Մակարենկոն իր ամբողջ կյանքն ու եռանդը նվիրեց նոր մարդու դաստիարակության գործին։

Դեռևս 1920 թվականին Պոլտավայի նահանգական ժողկրթբաժինը Մակարենկոյին հանձնարարեց անչափահաս օրինազանցների համար գաղութ կազմակերպել։ Նախկին գաղութի կիսաքանդ շենքում հիմնադրվեց Գորկու անվան աշխատանքային գաղութը։ Եղած սարքավորումը հափշտակել էին, ապակիները հանել, վառարանները քանդել։ Սաների մեջ կային հանցագործ պատանիներ, որոնք վարժված լինելով անգործության ու գողության, չէին ուզում ենթարկվել։ Բայց Մակարենկոն հայրական հոգատարությամբ տարավ ամեն տեսակի դժվարություն ու զրկանք և կարողացավ ստեղծել մի ամուր, համերաշխ կոլեկտիվ։

Մեծ գրող Մաքսիմ Գորկին 1928 թվականին այցելեց այդ գաղութը, հիացավ Մակարենկոյի աշխատանքով և իր հոդվածներից մեկում գրեց. «Ո՞վ կարող էր այդքան անճանաչելիորեն փոխել, վերադաստիարակել հարյուրավոր երեխաների, որոնց այնպես խստությամբ ու վիրավորական կերպով տրորել էր կյանքը։ Գաղութի կազմակերպողն ու վարիչը Ա. Ս. Մակարենկոն է։ Գաղութցիները սիրում են նրան և նրա մասին խոսում հպարտության այնպիսի տոնով, որ կարծես թե իրենք են ստեղծել նրան»։

Ա. Ս. Մակարենկոն է՛լ ավելի մեծ եռանդով աշխատեց Ձերժինսկու անվան աշխատանքային կոմունայում։ Նրա նախաձեռնությամբ ստեղծվեցին երկու բարդ ձեռնարկություններ. լուսանկարչական գործիքների արտադրություն (ՖԷԴ մարկայի — Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկի) և էլեկտրական շաղափների արտադրություն։

Մակարենկոյին ճանաչում ու սիրում էին մեր անծայրածիր երկրի բոլոր կողմերում։ Բազմաթիվ ծնողներ և ուսուցիչներ նամակներով խորհուրդ էին հարցնում նրանից, հետաքրքրությամբ լսում նրա դասախոսությունները և անհամբերությամբ սպասում նրա հոդվածներին ու գրքերին։ Մակարենկոյի «Մանկավարժական պոեմ», «Դրոշակները աշտարակների վրա» և մյուս գրքերը լայն ճանաչում են գտել։

Լրացավ Անտոն Սեմյոնովիչ Մակարենկոյի ծննդյան 75 տարին։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՇԱԽՄԱՏ

Առաջարկ՝ Ռ. ՕՂԹԵՅՅԱՆԻ



Մատ երկու քայլից



Մատ երկու քայլից



Մատ երկու քայլից



Մատ երկու քայլից



Մատ երեք քայլից


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 02880։ Պատվեր՝ 268։ Տպաքանակ՝ 14550։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 6/III 1963 թ.։ ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 20 կ.




# ԿԵՆԴԱՆԻՆԵՐ ԵՎ ԲՈՒՅՍԵՐ

*Ուղղահայացով արված են կենդանիների, իսկ հորիզոնականով՝ բույսերի անունները։*

Ուղղահայաց. *1. Կրծողների դասին պատկանող կենդանի։ 2. Մարդանման կապիկ։ 4. Վայրի խոզ։ 6. Ձմեռող թռչուն։ 7. Ընտանի կենդանի։ 8. Ձկան տեսակ։ 10. Սառուցյալ օվկիանոսում և Խաղաղ ու Ատլանտյան օվկիանոսների հյուսիսային մասերի ջրերում ապրող կաթնասուն կենդանի։ 13. Կենդանի, որը ձու է ածում, բայց իր ձագերին կաթով է կերակրում։ 15. Արևադարձային տափաստանների արագավազ խոշոր թռչուն։ 16. Սևանա լճում ապրող ձուկ։ 17. Տափաստանային արագավազ կենդանի։ 18. Տափաստանային թռչուն։ 20. Երկկենցաղ կենդանի։*

Հորիզոնական. *3. Մեքսիկայի անապատներում աճող չորասեր բույս։ 5. Արևադարձային պտուղ։ 9. Կորիզապտուղ։ 11. Բանջարանոցային կուլտուրա։ 12. Հացազգի կուլտուրա։ 13. Բարդածաղկավորների ընտանիքին պատկանող դեղաբույս։ 14. Սև ծովի ափերում աճող մերձարևադարձային պտուղ։ 19. Ծաղիկ։ 21. Միրգ։ 22. Բույսի կարևորագույն օրգան։ 23. Խաչածաղկավորների ընտանիքին պատկանող մոլախոտ։*



*Կազմեց՝* ԱՇՈՏ ՀԱԼԱՋՅԱՆ

## ԽԱՉԲԱՌ

Ուղղահայաց. *1. Ֆրանսիացի կոմպոզիտոր և ջութակահար։ 2. Հերոս՝ «Սիրտը երգում է» կինոֆիլմից։ 3. Գրենական պիտույք։ 4. Գետ՝ Իտալիայում։ 5. Ձայնանիշ։ 6. Այծյամ։ 7. Ֆրանսիական անուն։ 8. Ցուցական դերանուն։ 10. Չինական հարվածային երաժշտական գործիք։*

Հորիզոնական. *2. Կաթնամթերք։ 4. Կարտոֆիլի ծիլ։ 6. Քաղաք՝ ՍՍՌՄ-ում։ 8. Ձայնանիշ։ 9. Գույն։ 11. Կտորեղեն։ 12. Երաժշտական գործիք։*

Կազմեց՝ ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ



## ՀԱՅՐԻԿԻ ՆՎԵՐԸ

Վաչիկի հայրը մայրիկին նվեր էր բերել։ Երեխաները շատ էին ուզում իմանալ, թե հայրիկը ինչ է գնել, բայց նա նվերը ցույց չտվեց։

—Եթե ձեզանից որևէ մեկը կարողանա ասել, թե ինչ եմ գնել,— ասաց նա,—ես նրան մի լավ նվեր կտամ։

—Կոշիկ,—ասաց Վաչիկը։

—Ո՛չ, ժամացույց,—մեջ ընկավ Համիկը։

—Լավ, որպեսզի ճշտությամբ գտնեք, ես ձեզ կօգնեմ,—ասաց հայրիկը։— Այս նվերը մի զարդ է, որի անունը բաղկացած է վեց տառից։ Առաջին երեք տառը մարդու մարմնի մաս է, իսկ վերջին երեք տառը՝ Հայաստանի պատմական քաղաքներից մեկի անունը։

Ի՞նչ է նվերի անունը։

*Առաջարկ՝* ՎԱՐԴԳԵՍ ՍԱՀԱԿՅԱՆԻ



20 Կ.

ԱՎԵՏԻՍՅԱՆ ԱՐՄԻՆԵ
(Երևան, 7 տ.)

ԾԱՂԻԿՆԵՐ



